ՀՏԴ 01 : 941 (479.25)
ԳՄԴ 91.9 : 63.3 (2Հ)
Հ 854

Հովհաննիսյան Պ. Հ.
Հ 854 Մովսես Խորենացի: Մատենագիտություն / Պ. Հ. Հովհաննիսյան.- Երևան, ԵՊՀ հրատ., 2013, 436 էջ:

Գիրքն ընդգրկում է Մովսես Խորենացու երկասիրությունների մատենագիտությունը: Առանձին բաժնով տրված են նրա մասին հայերեն և օտար լեզուներով լույս տեսած գրքերն ու հոդվածները: Ունի «Հայոց պատմության» երկասիրողների կենսագրական բառարան:

Հասցեագրվում է հայագետներին:

ISBN 978-5-8084-1700-7

# ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

## ՄԱՍ ԵՐԿՐՈՐԴ

## ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ ՄՈՎՍԵՍ ԽՈՐԵՆԱՑՈՒ ՄԱՍԻՆ



## ՄԱՍ ԵՐՐՈՐԴ



*Քանդակը Երեմ Վարդանյանի, բազալտ, 1965*

# ՆԵՐԱԾՈՒԹՅՈՒՆ

1991 թվականին Մովսես Խորենացու «Հայոց պատմության» 1500-ամյակի տոնակատարության օրերին Երևանի պետական համալսարանի հրատարակչությունը լույս ընծայեց մեր «Մովսես Խորենացու մատենագիտությունը. երկասիրություններ» գիրքը[1]: Այն ընդգրկում էր Պատմահոր երկերի մատենագիտությունը՝ «Պատմութիւն Հայոց»-ի առաջին տպագրությունից (1695) մինչև 1981 թվականի հրատարակությունը: Բացի Պատմության բնագրի հրատարակությունների մատենագիտությունից, առանձին ներկայացված էին դրա աշխարհաբար և օտար լեզուներով, ինչպես նաև Պատմահոր այլևայլ և նրան վերաբերվող երկերի հրատարակությունների մատենագիտությունը: Գիրքը տպագրվել է առանց Խորենացու մասին լույս տեսած գրականության մատնանշման, որը, անշուշտ, զգալիորեն արժեզրկում է դրա մատենագիտական նշանակությունը:

Անցած տարիների ընթացքում զգալի աշխատանք է կատարվել այդ բացը լրացնելու ուղղությամբ: Հայաստանյան և արտասահմանյան ամենատարբեր գրադարաններից ու գրապահոցներից, լույս տեսած մատենագիտական ցանկերից ըստ հնարավորին առանձնացրել ու դասակարգել ենք թեմային վերաբերող նյութերը: Հասկանալի է, որ անհնարին էր տիրապետել գոյություն ունեցող ամբողջ տեղեկատվությանը, անշուշտ, կան մատենագիտական բազմաթիվ միավորներ, որոնք տեղ չեն գտել սույն գրքում: Խոսքս մասնավորապես վերաբերում է օտարալեզու միավորներին:

Առավել լիակատար ու ամբողջական է ներկայացված «Պատմութիւն Հայոց»-ի մատենագիտությունը: 1695 թ. Ամստերդամում հայ տպագրության մեծ երախտավոր Թովմաս Նուրիջանյանի աշխատասիրությամբ առաջին անգամ լույս տեսավ Մովսես Խորենացու «Հայոց պատմությունը»: Անդրանիկ հրատարակությունից անցել է շուրջ

---

*[1] Պ. Հ. Հովհաննիսյան, Մովսես Խորենացու մատենագիտությունը. երկասիրություններ, Երևան, 1991:*

320 տարի: Հետագայում Մովսես Խորենացու «Հայոց պատմությունը» (ամբողջական և հատվածաբար) հրատարակվել է բազմիցս, և թարգմանվել աշխարհի շատ լեզուներով:

Ստորև ներկայացվելու է Մովսես Խորենացու «Հայոց պատմության» և ընդհանրապես Պատմահոր երկասիրությունների (նաև վերագրվող) հրատարակությունների մատենագիտությունը՝ ըստ նրանց տպագրության ժամանակագրական կարգի: Մատենագիտությունում տրվում է յուրաքանչյուր հրատարակության նկարագրությունը, նշվում էջերի քանակը, տպագրության վայրն ու տարեթիվը և որոշ լրացուցիչ տվյալներ (օրինակ՝ գրախոսությունները): Միօրինակությունն ապահովելու մտահոգությամբ դասական ուղղագրությամբ հրատարակված նյութերը տրվում են ներկայումս Հայաստանի Հանրապետությունում գործող ուղղագրությամբ:

Անշուշտ, նման մի մատենագիտություն առաջին անգամ չէ, որ կազմվում է: Գոյություն ունեն նաև այլ մատենագիտական ցանկեր, որոնցում կազմողները անդրադարձել են Խորենացու Պատմությանն ու նրա մասին ստեղծված գրականությանը: Այդ ցանկերը պայմանականորեն կարելի է բաժանել երկուսի՝ ընդհանուր մատենագիտական և ուղղակիորեն Մովսես Խորենացուն նվիրված: Ընդհանուր մատենագիտական ցանկերը բազմաթիվ են, սակայն դրանք հաճախ հակասական են ու պակասավոր: Գոյություն ունեցող բազմազան ցանկերից (Մ. Միանսարով, Ք. Պատկանյանց, Կ. Կոստանյանց, Ա. Սալմասլյան և ուրիշներ) կարելի է առանձնացնել Գ. Զարբհանալյանի[1] և հատկապես Ա. Ղազիկյանի[2] մեծարժեք, համարյա սպառիչ աշխատությունները, Գ. Տրումպֆի[3] և Հ. Պետրոսյանի[4] կազմած ցանկերը:

---

[1] *Գ. Զարբհանալյան, Հայկական մատենագիտություն, Վենետիկ, 1883: Նույնի՝ «Մատենադարան հայկական թարգմանությանց նախնյաց: Դար Դ–ԺԳ», Վենետիկ, 1889: Նույնի՝ «Պատմություն հայկական տպագրության», Վենետիկ, 1895:*

[2] *Ա. Ղազիկյան, Հայկական նոր մատենագիտություն և հանրագիտարան հայ կյանքի, հատ. 1, Վենետիկ, 1909–1913:*

[3] *Գ. Տրումպֆ, Ուսումնասիրությունք հայ լեզվի և մատենագիտության ի Արևմուտս: ԺԴ–ԺԹ դար, Վենետիկ, 1895:*

[4] *Հ. Պետրոսյան, Հայ հին և միջնադարյան գրականության համառոտ բիբլիոգրաֆիա (V–XIX դար), Երևան, 1941:*

Նշելի են նաև Հայ հնատիպ գրքի մատենագիտական այն ցուցակները, որոնցից քաղել ենք բազմաթիվ արժեքավոր տվյալներ Մովսես Խորենացու այս կամ այն հրատարակության վերաբերյալ[1]:

Միայն ու հատուկ Մովսես Խորենացուն նվիրված ցանկեր են կազմել բազմաթիվ ուսումնասիրողներ (Մ. Էմին, Վ. Լանգլուա, Գ. Գովրիկյան, Պ. Ֆեթթեր, Ն. Ստեփանե, Գր. Խալաթյանց, Ն. Բյուզանդացի, Հ. Արմեն ու ուրիշներ): Սակայն դրանցից առավել ամբողջական են միայն Մ. Աբեղյանի[2], Ստ. Մալխասյանցի[3], Ս. Մարաբյանի[4] և Պ. Խաչատրյանի[5] կազմած ցանկերը: Վերջիններս, ի դեպ, հենվում են Մ. Աբեղյանի, իսկ Աբեղյանն էլ, ինչպես ինքն է խոստովանում, Ա. Ղազիկյանի կազմած ցանկի վրա:

Մովսես Խորենացու «Հայոց պատմության» հրատարակությունների մատենագիտությունը կազմել ենք նաև մենք[6]: Այժմ ներկայացվում է այդ ցանկի առավել ճշգրտված ու ամբողջական տարբերակը: Իսկ ինչ վերաբերում է Մովսես Խորենացու մասին գոյություն ունեցող մատենագիտական ցանկերին, ապա դրանք ինչ-որ չափով առկա են Պատմահոր վերաբերյալ լույս տեսած ամենատարբեր հրատարակություններում (գիրք, հոդված, հրապա-

---

*[1] Տե՛ս «Հայ հնատիպ գրքի մատենագիտական ցուցակ» (1512-1800), Երևան, 1963: **Հ. Դավթյան,** Հայ գիրքը 1801-1850 թվականներին: Մատենագիտություն, Երևան, 1967: **Ն. Ա. Ոսկանյան, Ք. Ա. Կորկոտյան, Ա. Մ. Սավալյան,** Հայոց գիրքը 1512-1800 թթ., Երևան, 1988: «Հայ գիրքը 1901-1920 թվականներին», կազմողներ՝ Օ. Գյուլումյան, Ա. Աղամյան, Ս. Թադևոսյան, Ա. Սավալյան, Մ. Սողոմոնյան, Ա. Սահակյան, Երևան, 2007 և այլն:*

*[2] **Մ. Աբեղյան,** [Մատենագիտություն Մովսես Խորենացու տպագրությունների], տե՛ս **Մովսես Խորենացի,** Պատմութիւն Հայոց, Տփղիս, 1913, էջ ԾԳ-ԾԴ:*

*[3] **Ստ. Մալխասյանց,** Խորենացու Պատմության հրատարակությունները, թարգմանությունները, տե՛ս **«Մովսես Խորենացի,** Հայոց պատմություն», Երևան, 1940, էջ LXXXVIII-XC:*

*[4] **Ս. Մարաբյան,** [Մատենագիտություն Մովսես Խորենացու], տե՛ս **Լ. Հ. Բաբայան,** Դրվագներ Հայաստանի վաղ ֆեոդալիզմի դարաշրջանի պատմագրության, Երևան, 1977, էջ 387-388:*

*[5] **Պ. Խաչատրյան,** [Մատենագիտություն Մովսես Խորենացու], տե՛ս **Կ. Քիպարյան,** Պատմություն հայ հին գրականության, 2-րդ հրատ., Վենետիկ, 1992, էջ 200-201:*

*[6] **Պ. Հ. Հովհաննիսյան,** Մատենագիտություն Մովսես Խորենացու «Հայոց պատմության» հրատարակությունների, տե՛ս **Մովսես Խորենացի,** Հայոց պատմություն. քննական բնագիրը և աշխարհաբար թարգմանությունը, Երևան, 1981, էջ 556-569:*

րակում և այլն): Նման գրականությունից կարելի է առանձնացնել Մովսես Խորենացուն նվիրված Գ. Խ. Սարգսյանի, Լ. Փ. Շահինյանի, Ա. Վ. Մուշեղյանի, Ն. Է. Դանիելյանի և այլոց ուսումնասիրությունների մատենագիտական ցանկերը: Անշուշտ, այդ ցանկերը չեն կարող և հավակնություն էլ չեն ունեցել գոնե մոտավորապես սպառելու եղած վիթխարի նյութը: Այդ դերը մասամբ վերապահվել է ներկայացվող մատենագիտությանը: Ասել, թե սույն մատենագիտությունը զերծ չէ վրիպակներից ու բացթողումներից, ճիշտ չի լինի: Հայտնի է, որ չկան ու չեն կարող լինել անթերի, վերջնական մատենագիտական ցանկեր: Ուստի, շնորհակալությամբ կընդունենք սույն մատենագիտության վերաբերյալ ընթերցողների հայտնած դիտողությունները, լրացումներն ու ցանկությունները:



# ՄԱՍ ԱՌԱՋԻՆ

## ԵՐԿԱՍԻՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՄԱՏԵՆԱԳԻՏՈՒԹՅՈՒՆ

## I. ՄԱՏԵՆԱԳԻՏՈՒԹՅՈՒՆ ՄՈՎՍԵՍ ԽՈՐԵՆԱՑՈՒ «ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ՀԱՅՈՑ»-Ի ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ

### Ա. ՊԱՏՄՈՒԹՅԱՆ ԲՆԱԳՐԻ ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅՈՒՆՆԵՐ

**1. Ազգաբանութիւն տոհմին Յաբեթեան յօրինեցեալ ի Մովսիսէ Խորենացւոյ, Ցեռամեծ Վարդապետէ, և Յոգներախտ Քերթողահօրէ:**

*Ի խնդրոյ պայազատասպետի Սահակայ Բագրատունւոյ: Հարազատ և բուն պատմութիւն նախնեացն առաջնոց, թագաւորաց, իշխանաց, նախարարաց, և հայրապետաց Արամեան ազգին:*

*Սկսեալ ի Հայկայ Քաջէ, մինչև ց'Արտաշիր թագաւորն մեր:*

*Ի լոյս ածեալ՝ տպիւք և ծախիւք Թօմայ Վանանդեցւոյ, վեհափայլի եպիսկոպոսի և բազմաջան վարդապետի:*

*Ի Հայրապետութեանն Սրբոյ Էջմիածնի Տեառն Նահապետի Ամենայն Հայոց կաթողիկոսի:*

*Յամի Մարդեղութեան բանին, 1695: Յամստէլօդամի[1]:*

*10 չհամարակալված + 483 + 4 չհամարակալված էջ:*

*Այս հրատարակությունն իրականացվել է սխալաշատ ձեռագրից:*

---

[1] *Ստ. Մալխասյանցը (**Մովսես Խորենացի**, Հայոց պատմություն, Երևան, 1968, Առաջաբան, էջ 58), **Ա. Առաքելյանը** («Հայ ժողովրդի մտավոր մշակույթի զարգացման պատմություն», հատ. 1, Երևան, 1959, էջ 452), Լ. Հ. Բաբայանը («Դրվագներ Հայաստանի XIV-XVIII դարերի պատմագրության», Երևան, 1984, էջ 83), Ս. Մաքրյանը (**Լ. Հ. Բաբայան**, Դրվագներ Հայաստանի վաղ ֆեոդալիզմի դարաշրջանի պատմագրության, էջ 387), Ն. Ադամյանը [«Армянская литература (библиографический указатель)», выпуск I, досоветский период, составители: Н. А. Адамян и др., Ереван, 1974, էջ 48] և ուրիշներ սխալմամբ հրատարակության թվականը համարում են 1685-ը, իսկ Լ. Տեր-Մկրտչյանը՝ 1696 թ. (տե՛ս **Л. Х. Тер-Мкртичян**, Армянские источники о Средней Азии, М., 1979, էջ 24):*

**2. Մովսիսի Խորենացւոյ Պատմութիւն և Աշխարհագրութիւն։**

*Ի Լոնտոն, 1736*[1]*։*

*XXIV + 331 էջ։*

*333-րդ էջից՝ «Աշխարհացոյց Մովսիսի Խորենացւոյ»։*

*Հայերեն բնագիրը և լատիներեն թարգմանությունը։ Առաջաբանը, ծանոթագրությունները ու ցանկերը միայն լատիներեն։ Այս հրատարակության մասին տե՛ս «Լատիներեն թարգմանություն Գուլիելմուս և Գեորգ Վիստոնների»։*

**3. Ազգաբանութիւն տոհմին Յաբեթեան յօրինեալ ի Մովսէսէ Խորենացւոյ, Յեռամեծ Վարդապետէ, և Յոգներախտ Քերթողահօրէ։**

*Ի խնդրո պայազատապետի Սահակայ Բագրատունւոյ։*

*Տպագրեցեալ երկասիրութեամբ Սարգսի վարդապետի և արքեպիսկոպոսի Կոստանդնուպօլսեցւոյ։ Ըստ խնդրոյ Յովհաննէս Չէլէպւոյն՝ Հովուենց մահտեսի Յարութիւն գերապատիւ իշխանին ի Քրիստոս հանգուցելոյ։*

*Ի Հայրապետութեանն Սրբոյ Էջմիածնի Տեառն Մինասայ Ակնեցւոյ՝ Հայոց կաթողիկոսի։*

*Յամի Տեառն 1752. ի մայիսի 12*[2]*։ Ի Վենետիկ*[3]*. ի տպարանի Անտոնի Պօրթօլի։ Հրամանաւ Մեծաւորաց։*

---

[1] *Գ. Զարբհանալյանը [«Պատմություն հայերեն դպրության», հատ. Ա։ Հին մատենագրություն, Վենետիկ, 1865, էջ 265, հմմտ. նաև նույնի՝ «Հայկական հին դպրության պատմություն (Դ–ԺԳ դար)», Վենետիկ, 1886, էջ 354], Ս. Մարաքյանը (տե՛ս* **Լ. Հ. Բաբայան,** *նշվ. աշխ., էջ 388) սխալմամբ հրատարակության թվականը համարում են 1726-ը, Ղ. Ալիշանը (տե՛ս «Բազմավեպ», 1847, № 10, էջ 155, ծան.)՝ 1728-ը, Մ. Ամիրխանյանը (***М. Амирханян,** Армения в русской литературе, Ереван, 1976, *էջ 7)՝ 1763-ը, Վ. Լանգլուան (տե՛ս «Ֆրանսերեն թարգմանություն Վ. Լանգլուայի», էջ 52)՝ 1737-ը, Մ. Մկրյանը (տե՛ս նույնի՝ «Մովսես Խորենացի», Երևան, 1970, էջ 181)՝ 1836-ը և այլն։*

[2] *Մ. Էմինը (տե՛ս «История Армении Моисея Хоренского», Москва, 1858, Առաջաբան, էջ 19, հմմտ. նաև «История Армении Моисея Хоренского», Москва, 1893, Առաջաբան, էջ XXI), Л. Тер-Мкртичян-ը (էջ 24) սխալմամբ հրատարակության թվականը համարում են՝ 1762-ը, իսկ Ստ. Մալխասյանցը (***Մովսես Խորենացի,** *Առաջաբան, էջ 58)՝ 1753-ը։*

[3] *Պ. Ֆեթթերը (տե՛ս «Հայկական աշխատասիրությունք, Վիեննա, 1895», էջ 104) հիշատակում է Կ. Պոլսի 1752 թ. ինչ-որ հրատարակություն, որն, անշուշտ, թյուրիմացություն է, խոսքն, ըստ երևույթին, Վենետիկի 1752-ի հրատարակության մասին է։*

*Նույն սխալը շրջանառության մեջ է դրել Ն. Մառը դեռևս 1890 թվականին (տե՛ս «Արաքս», պատկերազարդ հանդես, Գիրք Բ, Ս. Պետերբուրգ, 1890, էջ 114)։*

*XII + 424 էջ:*

*Որից հետո նոր տիտղոսաթերթով և նոր էջահամարով՝ «Հնութիւ համառօտ Պատմութիւն Աշխարհագրութեան: Արարեալ ի նոյնոյ հեղինակէ Մովսիսէ Խորենացւոյ, Քաջիմաստ և Ցօգնահանճար Վարդապետէ»:*

*«Պատմութիւն Հայոց»-ի այս հրատարակությունն արտատպությունն է ամստերդամյան տպագրության՝ բնագրական աննչան ուղղումներով:*

**4. Մովսիսի Խորենացւոյ Պատմութիւն Հայոց:**

*Ի Վենետիկ, ի Սուրբ Ղազար, ՌՄՀԶ (1827)[1]:*

*632 էջ[2]:*

*Տպագրությունը կատարվել է չորս ձեռագրերի բաղդատությամբ (աշխատասիրող՝ Արսեն Բագրատունի):*

**5. [Մովսիսի Խորենացւոյ Պատմութիւն]:**

*Հատ. Ա, Վենետիկ, Ս. Ղազար, 1841:*

*XVIII + 389 + 15 չհամարակալված էջ:*

*Հայերեն բնագիրը և ֆրանսերեն թարգմանությունը: Սույն առաջին հատորն ընդգրկում է Խորենացու Պատմության Ա և Բ գրքերը:*

*Հատ. Բ, Վենետիկ, Ս. Ղազար, 1841[3]:*

*207 + 27 չհամարակալված էջ:*

*Հայերեն բնագիրը և ֆրանսերեն թարգմանությունը: Սույն երկրորդ հատորն ընդգրկում է Խորենացու Պատմության Գ գիրքը:*

---

[1] *Գ. Զարբհանալյանը (տե՛ս «Հայկական մատենագիտություն», էջ 269) հրատարակության թվական է նշում 1826-ը, որն, անշուշտ, ճիշտ չէ (հմմտ. **Հ. Դավթյան**, Հայ գիրքը 1801-1850 թվականներին, Երևան, 1967, էջ 130):*

[2] *Գրախոսությունը տե՛ս* **K. F. Neumann,** *«Hermes, oder Kritisches Jahrbuch der Literatur», Լայպցիգ, հատ. 33, էջ 177-204: Խորեն Ստեփանեն (տե՛ս* ***Մովսես Խորենացի,*** *Հայոց պատմություն, Բ տպ., ՍՊԲ, 1897, էջ Հ) սխալմամբ սա համարում է Պատմության երկրորդ տպագրությունը: Ս. Շտիկյանը (տե՛ս «Հայ նոր գրականության պատմություն», հ. 1, Երևան, 1962, էջ 537) նշելով 1826 թ. հրատարակության մասին՝ գրում է, թե նույնն անփոփոխ լույս է տեսել 1827 և 1849 թվականներին: Ակներև է, որ այս վրիպակները գալիս են Գ. Զարբհանալյանից:*

[3] *Վ. Լանգլուան (տե՛ս նշվ. աշխ., էջ 52), Խ. Ստեփանեն (տե՛ս նշվ. աշխ., էջ Հ) սխալմամբ հրատարակության թվականը համարում են 1842-ը, իսկ Մ. էմինը (տե՛ս* ***«Моисей Хоренский», М., 1858,*** *էջ 19)՝ 1844-ը:*

ԱԶԳԱԲԱՆՈՒԹԻՒՆ

ՏՈՀՄԻՆ

ՅԱԲԵԹԵԱՆ

Յօրինեցեալ 'ի Մովսիսէ
Խորենացւոյ, յեւսամեծ Վար
դապետէ, և յոգներախտ
Քերթողահօրէ։

Ի խնդրոյ Պայազատապետին
Սահակայ Բագրատունւոյ։

Հարազատ, և բուն Պատմութիւն Նախ
նեաց Հայոց, Թագաւորաց, Իշխանաց,
Նախարարաց, և Հայրապետաց
Արամեան Ազգին։

Մնեալ 'ի Հայկայ Բնիկէ, մինչև ց'Ար
տաշէս Թագաւորն մեր։

Ընդ այս ածեալ Տաղիւք, և Պատմիւք
Թովմայ Մանանդեցւոյ, Մեհարիայ
և Նախիճկոյսոփ, և բազմաջան
Վարդապետի։

Ի Հայրապետութեան Սրբոյ Էջմիածնի Տ՟Ն
Նահապետի մեծ Հայոց Կաթողիկոսի։

ՅԱՄԻ ՄԱՐԴԵՂՈՒԹԵԱՆ
ՔԱՆԻՆ. 1695։

ՅԱՄՍՏԵՐՕԴԱՄ

*Մովսես Խորենացու «Հայոց պատմության» առաջին հրատարակության անվանաթերթը*

*Այս հրատարակության մասին տե՛ս «Ֆրանսերեն այլ թարգմանություն Պ. Ե. Լը Վայյան դը Ֆլորիվալի»:*

**6. Սրբոյ Հօրն մերոյ Մովսէսի Խորենացւոյ Պատմութիւն Հայոց:**

*Լույս է տեսել «Սրբոյ Հօրն մերոյ Մովսէսի Խորենացւոյ մատենագրութիւնք: Ի Վենետիկ: Ի տպարանի Սրբոյն Ղազարու: Յամի 1843, ՌՄՂԲ» հատորում[1]:*

*277 էջ:*

*Որից հետո Խորենացու այլ երկասիրություններ և ցանկեր: Տպագրությունը կատարվել է վեց ձեռագրերի բաղդատությամբ: Տարընթերցվածները տրվում են էջի ներքևում իբրև ծանոթագրություններ:*

**7. [Մովսիսի Խորենացւոյ Պատմութիւնք**

*Հատ. Ա, Վենետիկ, Ս. Ղազար, 1845:*

*XII + 389 + 16 չհամարակալված էջ:*

*Հայերեն բնագիրը և ֆրանսերեն թարգմանությունը: Սույն առաջին հատորն ընդգրկում է Խորենացու Պատմության Ա և Բ գրքերը:*

*Հատ. Բ, Վենետիկ, Ս. Ղազար, 1845[2]:*

---

*[1] Գ. Զարբհանալյանը (տե՛ս «Հայկական մատենագիտություն...») երկու տարբեր, իրարամերժ թվականներ է նշում՝ 1844 (էջ 273) և 1845 (էջ 270): Խոսքն, անշուշտ, նույն 1843 թվականի հրատարակության մասին է (հմմտ. Հ. Դավթյան, նշվ. աշխ., էջ 307 և 322):*

*[2] ՀովՀ. Պետրոսյանը (տե՛ս նշվ. աշխ., էջ 23-25) սխալմամբ սա համարում է Պատմության վեցերորդ տպագրությունը: Մ. էմինը (տե՛ս «Моисей Хоренский», М., 1893, էջ XXI) սխալմամբ հրատարակության թվականը համարել է 1844-ը, Գ. Զարբհանալյանը [«Հայկական հին դպրության պատմություն (Դ-ԺԳ դար)», Վենետիկ, 1886, էջ 354, հմմտ. նաև նույնի՝ «Պատմութիւն հայերեն դպրութեանց», հատ. Ա, էջ 373]՝ 1855-ը: Նույն սխալը կրկնվել է «Հայ ժողովրդի պատմություն» ակադեմիական հրատարակության V հատորում (Երևան, 1974, էջ 592): Գ. Զարբհանալյանը («Հայկական հին դպրության պատմություն», էջ 354), Մ. Աբեղյանը (տե՛ս Մովսես Խորենացի, Պատմութիւն Հայոց, Տփղիս, 1913, էջ ՄԳ), Ստ. Մալխասյանցը (տե՛ս նշվ. աշխ., էջ 58), ՀովՀ. Պետրոսյանը (տե՛ս նշվ. աշխ., էջ 23-25), «Հայ ժողովրդի պատմություն» ակադեմիական հրատարակության V հատորի (էջ 592) հեղինակները և ուրիշներ սխալմամբ հրատարակության վայրն են համարել Փարիզը, մինչդեռ պետք է լինի Վենետիկ (տե՛ս ստորև, էջ 31 ծան. 1):*

ՄՈՎՍԻՍԻ ԽՈՐԵՆԱՑԻՈՒ ՊԱՏՄՈՒԹԻՒՆ
ԵՒ ԱՇԽԱՐՀԱԳՐՈՒԹԻՒՆ.

---

# MOSIS CHORENENSIS
# HISTORIÆ ARMENIACÆ
## LIBRI III.

Accedit ejusdem Scriptoris

## EPITOME GEOGRAPHIÆ.

PRÆMITTITUR

## PRÆFATIO,

QUÆ DE

LITERATURA, ac VERSIONE SACRA ARMENIACA agit;

ET SUBJICITUR

## APPENDIX,

QUÆ CONTINET

EPISTOLAS DUAS ARMENIACAS,

Primam, CORINTHIORUM ad PAULUM Apostolum, Alteram, PAULI Apostoli ad CORINTHIOS; nunc primùm ex Codice MS integrè divulgatas.

---

Armeniacè ediderunt, Latinè verterunt, Notisque illustrârunt
GULIELMUS & GEORGIUS, GUL. WHISTONI Filii,
Aulæ Clarensis in Academiâ Cantabrigiensi aliquandiu Alumni.

---

Լաւ են երկու քան զմի, որոց գոն վարձք բարի 'ի վաստակս նոցա.
Αγαθοι ὁι δυο ὑπερ τον ἑνα, ὁις εςιν αυτοις μισθος αγαθος εν μοχθῳ αυτων. *Eccles.* IV. 9.

---

LONDINI:
Ex OFFICINA CAROLI ACKERS TYPOGRAPHI;
Apud JOANNEM WHISTONUM BIBLIOPOLAM.
MDCCXXXVI.

Վիստոնյան հրատարակության անվանաթերթը

*207 + 29 չհամարակալված + IV էջ:*

*Հայերեն բնագիրը և ֆրանսերեն թարգմանությունը: Սույն երկրորդ հատորն ընդգրկում է Խորենացու Պատմության Գ գիրքը: Սա վերատպությունն է Խորենացու Պատմության վենետիկյան 1841 թ. հայ-ֆրանսերեն հրատարակության:*

*Այս հրատարակության մասին տե՛ս «Պ. Ե. Լը Վայյան դը Ֆլորիվալի ֆրանսերեն երկրորդ թարգմանության երկրորդ հրատարակությունը»:*

□ ***Մովսես Խորենացի,*** *Պատմութիւն Հայոց:*
*Վենետիկ, Ս. Ղազար, 1849*[1]*:*

**8. Սրբոյն հօրն մերոյ Մովսէսի Խորենացւոյ Պատմութիւն Հայոց:**
*Լույս է տեսել «Սրբոյ հօրն մերոյ Մովսէսի Խորենացւոյ Մատենագրութիւնք: Ի Վենետիկ: Ի տպարանի Սրբոյն Ղազարու: Յամի 1865» հատորում*[2]*:*

*271 էջ:*

*Որից հետո Խորենացու այլ երկասիրություններ և ցանկեր: Սա Խորենացու 1843 թ. վենետիկյան «Մատենագրութիւնք»-ի անփոփոխ վերատպությունն է:*

**9. Սրբոյն հօրն մերոյ Մովսէսի Խորենացւոյ Պատմութիւն Հայոց:**
*Թիֆլիսի Հայոց հրատարակչական ընկերություն:*
*Տփխիս: Ի տպարանի Յովհաննու Մարտիրոսեանց: 1881*[3]*:*
*II + 417 + 18 չհամարակալված էջ:*
*Վերատպությունն է Վենետիկի 1865 թ. հրատարակության, առանց տողատակի տարընթերցվածների:*

**10. Մովսէսի Խորենացւոյ Պատմութիւն Հայոց:**
*Ի Վենետիկ: Ի Վանս Մխիթարեանց: 1881-ՌՎԼ*[4]*:*

---

[1] *Տրվում է ըստ Գ. Զարբհանալյանի (տե՛ս «Հայկական մատենագիտութիւն», Վենետիկ, 1883, էջ 269) և Մ. էմինի (տե՛ս նշվ. աշխ., էջ XXI): Այսպիսի հրատարակության գոյությունը կասկածելի է (հմմտ. նաև Հ. Դավթյան, նշվ. աշխ., էջ 373):*

[2] *Խորեն Ստեփանեն (տե՛ս նշվ. աշխ., Առաջաբան, էջ Հ) սխալմամբ հրատարակության թվականը համարել է 1864-ը:*

[3] *Գ. Զարբհանալյանը (տե՛ս «Հայկական մատենագիտութիւն», էջ 269) և Մ. էմինը (տե՛ս նշվ. աշխ., էջ XXI) սխալմամբ հրատարակության թվականը համարել են 1880-ը, իսկ Խորեն Ստեփանեն (տե՛ս նշվ. աշխ., էջ Հ)՝ 1878-ը:*

[4] *Գ. Զարբհանալյանը (տե՛ս «Հայկական մատենագիտութիւն», էջ 269) սխալմամբ հրատարակության թվականը համարել է 1880-ը, նույնը և Հ. Տաշյանը (տե՛ս* ***Մ. Աբեղյան,*** *նշվ. աշխ., Առաջաբան, էջ Զ):*

*4 չհամարակալված + 656 էջ:*

*Այս հրատարակությունը կատարվել է 1843 թ. Վենետիկի տպագրության հիման վրա, սակայն օգտագործվել են նաև այլ ձեռագրեր, որոնց տարընթերցվածները տեղ-տեղ մտցված են բնագրի մեջ:*

**11. Սրբոյ հօրն մերոյ Մովսէսի Խորենացւոյ Պատմութիւն Հայոց:**

*Հրատարակութիւն Գ. Գալստեանի, № 40: Թիֆլիս, էլեկտրաշարժ տպարան որ. Ն. Աղանեանցի, Պօլից. 7: 1910*[1]*:*

*422 էջ:*

*Վերատպությունն է Տփխիսի 1881 թ. հրատարակության, միայն ավելացվել է հատուկ անունների լիակատար ցանկը:*

**12. Մովսիսի Խորենացւոյ Պատմութիւն Հայոց:**

*Աշխատութեամբ Մ. Աբեղեան եւ Ս. Յարութիւնեան: Ծախիւք Տեառն Սուքիասայ արքեպիսկոպոսի Պարզեանց: Տփղիս: Արագատիպ Մնացական Մարտիրոսեանցի: Պուշկինեան փողոց, 3: 1913*[2]*:*

*ԿԴ + 396 էջ:*

*Լույս է տեսել «Պատմագիրք Հայոց, ի լոյս ածեալ բաղդատութեամբ ձեռագրաց» մատենաշարով, որպես երկրորդ հատորի առաջին գիրք: Սա գիտական հրատարակություն է, որն իրականացվել է 35 ձեռագիր և տպագիր օրինակների քննա-բաղդատական համեմատության հիման վրա:*

**13. Սրբոյ հօրն մերոյ Մովսէսի Խորենացւոյ Պատմութիւն Հայոց:**

*Ղուկասեան մատենադարան: Ժ: Թիֆլիս, 1913:*

*431 էջ:*

---

[1] *Գրախոսությունը՝* ***Ն. Ակինյան,*** *«Հանդես ամսօրյա», ամսագիր, Վիեննա, 1910, № 9, էջ 254 (ստորագր.՝ Հ. Ն. Ա.):*

[2] *Գրախոսությունները՝* ***Ն. Աղբալյան,*** *«Նոր հոսանք», գրական, գիտական, հասարակական և քաղաքական ամսագիր, Թիֆլիս, 1913, №№ 9–10, էջ 1513-1517 (ստորագր.՝ Ն. Ա.):* ***Հ. Ավգեր,*** *«Բազմավեպ», ամսագիր, Վենետիկ, 1914, №№ 3-4, էջ 183–184:* ***Ն. Ակինյան,*** *«Հանդես ամսօրյա»; 1914, №№ 10–11, էջ 681–692:* ***Պագլը Խան,*** *«Ավետաբեր», շաբաթական հանդես ընտանեկան, կրոնական, գիտական, քաղաքական, հատ. ԿԷ, Կ. Պոլիս, 1914, 7 փետրվարի, № 6, էջ 133-136: Նույնի՝ «Նոր այգ», հանդես գրական, գիտական, քաղաքական, Մարզվան, 1914, № 1-2, էջ 9–11:*

## ՄՈՎՍԻՍԻ ԽՈՐԵՆԱՑՒՈՅ

# ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ՀԱՅՈՑ

ԱՇԽԱՏՈՒԹԵԱՄԲ

Մ. ԱԲԵՂԵԱՆ ԵՒ Ս. ՅԱՐՈՒԹԻՒՆԵԱՆ.

ԾԱԽԻՒՔ ՏԵԱՌՆ ՍՈՒՔԻԱՍԱՅ ԱՐՔԵՊԻՍԿՈՊՈՍԻ ՊԱՐԶԵԱՆՑ.

ՏՓՂԻՍ
ԱՐԱԳԱՏԻՊ ՄՆԱՑԱԿԱՆ ՄԱՐՏԻՐՈՍԵԱՆՑԻ
ՊՈՒՇԿԻՆԵԱՆ ՓՈՂՈՑ, Յ.
1913.

**Մովսես Խորենացու Պատմության քննա-բաղդատական Հրատարակության անվանաթերթը**

*Վերատպությունն է Տփխիսի 1881 թ. հրատարակության*[1]*։*

**14. Մովսէսի Խորենացւոյ Պատմութիւն Հայոց։**

*Ի Վէննետիկ։ Ի Վանս Մխիթարեանց։ 1955-ՌՋԾԵ։*

*Ը + 698 էջ։*

*Վերատպությունն է Վեննետիկի 1881 թ. հրատարակության։*

**15. Մովսիսի Խորենացւոյ Պատմութիւն Հայոց։**

*Քննական բնագիրը Մ. Աբեղյանի և Ս. Հարությունյանի։ Երևանի համալսարանի հրատարակչություն։ Երևան, 1981։*

*588 էջ։*

*Վերատպությունն է Տփղիսի 1913 թ. քննական հրատարակության՝ հանդիպադրությամբ Ստ. Մալխասյանցի 1940 թ. աշխարհաբար թարգմանության, առանց ներածության, տարընթերցվածների և ցանկերի։ Հրատարակության է պատրաստել բան. գիտ. թեկն. Գ. Գ. Անանյանը։ Լույս է տեսել «Ուսանողի գրադարան» մատենաշարով։*

**16. Մովսիսի Խորենացւոյ Պատմութիւն Հայոց։**

*Աշխատութեամբ Մ. Աբեղեան և Ս. Յարութիւնեան։*

*Դելմար (ԱՄՆ), 1981։*

*XXI + ԿԴ + 396 էջ։*

*Վերատպությունն է Տփղիսի 1913 թ. քննական հրատարակության, Հարվարդի (ԱՄՆ) համալսարանի պրոֆեսոր Ռոբերտ Թոմսոնի անգլերեն առաջաբանով։ Լույս է տեսել «Classical Armenian text» մատենաշարով։ [Moses Khorenatsi, Patmut'iwn Hayots' (History of the Armenins). Caravan books. Delmar, New York, 1981].*

**17. Մովսէս Խորենացի, Պատմութիւն Հայոց։**

*Քննական բնագիրը և ներածությունը Մ. Աբեղյանի և Ս. Հարությունյանի։*

*Նմանհանություն։*

*Լրացումները Ա. Բ. Սարգսյանի։*

---

[1] *Ստ. Մալխասյանցը (տե՛ս նշվ. աշխ., էջ 59) գրում է, որ սա Տփղիսի 1913 թ. քննական հրատարակության վերատպությունն է՝ առանց ծանոթագրությունների և առաջաբանի։ Սակայն դա թյուրիմացություն է, քանզի «Զեկուցումն»-ից առաջ (էջ 4) նշված է, որ վերատպությունը կատարված է Թիֆլիսի 1881 թ. Հայոց հրատարակչական ընկերության տպագրությունից։*

*Հայկական ԽՍՀ ԳԱ Հրատարակչություն: Երևան, 1991:*
*ԿԴ + 486 էջ*[1]*:*

*Վերատպությունն է Տփղիսի 1913 թ. քննական հրատարակության՝ իրականացված Պատմահոր գլուխգործոցի ստեղծման 1500-ամյա հոբելյանի առթիվ: Մեկ տասնյակ այլ ձեռագրերի և նույնքան հնագույն պատառիկների Ա. Բ. Սարգսյանի կատարած համեմատությամբ:*

**18. Մովսէս Խորենացի, Հայոց պատմութիւն:**
*Քննական բնագիրը Մ. Աբեղյանի և Ս. Հարությունյանի: 1991 թ. հրատարակության Ա. Սարգսյանի լրացումները մուծված են տարընթերցումների մեջ: Ներածությունը՝ Պ. Մուրադյանի և Կ. Յուզբաշյանի:*
*Լույս է տեսել գրերի գյուտի 1600-ամյակի «Մատենագիրք Հայոց» մատենաշարով (Ե դար, Բ հատոր), Անթիլիաս-Լիբանան, 2003:*
*էջ 1739-2121:*

## Բ. «ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ՀԱՅՈՑ»-Ի ԲՆԱԳՐԻ ՀԱՄԱԲԱՐԲԱՌՆԵՐ

***1. Մովսիսի Խորենացւոյ Պատմութիւն Հայոց:***
*Գիրք Ա (Ա-Լ տառեր):*
*Համաբարբառը կազմեցին՝*
*Օֆելյա Խաչատրյան (Ա-Դ տառեր):*
*Հեղինե Սարգսյան (Ե-Լ տառեր):*
*Խմբագրեց՝ Ժորա Թոսունյան:*
*Երևան, 1975:*
*881 էջ:*

*Գիրք Բ (Խ-Մ տառեր):*
*Համաբարբառը կազմեցին՝*
*Օֆելյա Խաչատրյան (Խ-Ճ տառեր),*
*Ամալյա Բաղարյան (Մ տառը):*
*Երևան, 1975:*
*450 էջ:*

---

[1] Գրախոսությունը տե՛ս ***Р. Багдасарян***, *«Республика Армения», газета, 1991, 4 октября, № 187 (229), стр. 1.*

Գիրք Գ (Ց–Ֆ տառեր)։
Համաբարբառը կազմեց՝
Բամբիշ Եգանյան։
Երևան, 1976։
592 էջ։

2. Բառա-քերականական համաբարբառ։
**Մովսէսի Խորենացւոյ Պատմութիւն Հայոց։**
Տփղիս, 1913։
396 էջ։
Կազմեց՝ Օֆելյա Խաչատրյան։
Վերամշակեց և խմբագրեց՝ Պետրոս Բեդիրյան։
Քարտացանկը վերամշակեց՝ Բամբիշ Եգանյան։
Մասնագիտական կոնսուլտանտներ՝ Ա. Ա. Աբրահամյան, Պ. Ս. Բեդիրյան։
Հայկական ՍՍՀ Գիտությունների ակադեմիա. Հայկական քարտաբան։
Երևան, 1972[1]։
476 էջ։

## Գ. ԱՇԽԱՐՀԱԲԱՐ ԹԱՐԳՄԱՆՈՒԹՅՈՒՆՆԵՐ

1. Թարգմանություն Խորեն Ստեփանեի.
**Մովսես Խորենացու Հայկական պատմություն[2]։**

---

[1] Գրախոսությունը՝ **O. Schütz**, «Acta Orient.», Budapest, 1975, t. XXIX, fasc. 3, p. 395–401։

[2] Գրախոսությունները՝ **Ս. Հախումյանց**, «Մշակ», գրական և քաղաքական լրագիր, Թիֆլիս, 1889, 12 դեկտեմբերի, № 142, էջ 1–3։ **Ն. Մառ**, «Արաքս», գրական-գեղարվեստական հանդես, Ս. Պետերբուրգ, 1889, Ա տարի, գիրք Բ, էջ 113–116 (ստորագր.՝ Նումեն)։ **[Անստորագիր]**, «Արձագանք», 1889, № 30, էջ 450։ **Մ. Աբեղյան**, «Նոր Դար», քաղաքական-գրական օրաթերթ, Թիֆլիս, 1890, 25 հունվարի, № 10, էջ 2, 27 հունվարի, № 11, էջ 3, 30 հունվարի, № 12, էջ 2–3, 1 փետրվարի, № 13, էջ 2–3, 3 փետրվարի, № 14, էջ 2–3 (ստորագր.՝ Վարսամ)։ **Ա. Արփիարյան**, «Մասիս», ազգային, գրական և քաղաքական երկշաբաթաթերթ, Կ. Պոլիս, 1890, 15 փետրվարի, № 3939, էջ 254–255։ Նույնի՝ «Մասիս», 4 հուլիսի, № 3944, էջ 343–344 (ստորագր.՝ Ա. Ա.)։ **Լ. Եսայան**, «Արևելք», ազգային, գրական և քաղաքական օրաթերթ, Կ. Պոլիս, 1890, 21 ապրիլի, № 1879, էջ 3։ **Ե. Դուրյան**, «Արևելք», 1890, 26 հունիսի, № 1933, էջ 3, 27 հունիսի, № 1934, էջ 3, 28 հունիսի, № 1935, էջ 3։ **Ղ. Աղայան**, «Աղբյուր», ամսագիր,

*Աշխարհաբար թարգմանեց և լուսաբանեց Խորեն ծայրագույն վարդապետ Ստեփանե: Ս. Պետերբուրգ: Տպարան Ի. Ն. Սկորոխոդովի, 1889*[1]*:*
*ՃԹ + Բ + 351 + 328 էջ:*
*Թարգմանչի առաջաբանով, ծանոթագրություններով և հավելվածներով: Թարգմանությունն իրականացվել է 1843 և 1881 թվականների վենետիկյան հրատարակությունների հիման վրա:*

2. *Այլ թարգմանություն Խորեն Ստեփանեի.*
***Մովսես Խորենացի, Հայոց պատմություն:***
*Աշխարհաբար թարգմանեց և լուսաբանեց Խորեն եպիսկ. Ստեփանե: (Հիմնովին սրբագրված և բարեփոխված Բ տպագրություն): Ս. Պետերբուրգ, տպ. Հ. Լիբերմանի, 1897*[2]*:*
*2 + ՃԺԴ + 560 էջ:*

3. *Թարգմանություն Ստ. Մալխասյանցի.*
***Մովսես Խորենացի, Հայոց պատմություն:***
*Թարգմանություն, ներածություն և ծանոթագրություններ դոկտոր Ստ. Մալխասյանցի: Հայպետհրատ: Երևան, 1940*[3]*:*

---

*Թիֆլիս, 1890, № 1, էջ 3-4: **Գ. Գալեմքեարյան**, «Հանդես ամսօրյա», 1890, № 5, էջ 113-115 (ստորագր.՝ Հ. Հ. Գ.): **[Անստորագիր]**, «Արձագանք», 1890, № 27, էջ 5: **Լ. Սարգսյան**, «Մուրճ», գրական, հասարակական և քաղաքական ամսագիր, Թիֆլիս, 1890, № 1, էջ 102-106 (ստորագր.՝ Լ. Ս.): **Ս. Տեր-Սարգսյանց**, «Նոր Դար», 1890, 8 դեկտեմբերի, № 195 էջ 3: **Գր. Խալաթյանց**, «Արաքս», Բ տարի, Գիրք Ա, 1890, էջ 113-151: Նույնը՝ նաև առանձին, Ս. Պետերբուրգ, 1890, 39 էջ: Նույնի՝ «Մշակ», 1891, 9 ապրիլի, № 40, էջ 2: **Ռ. Պերպերյան**, «Հանդես ամսօրյա», 1892, № 12, էջ 361-368: **Մ. Պալյան**, «Հանդես ամսօրյա», 1893, № 7, էջ 201-206: **[Անստորագիր]**, «Արձագանք», գրական և քաղաքական լրագիր, Թիֆլիս, 1895, 20 դեկտեմբերի, № 147, էջ 1: **[Անստորագիր]**, «Հանդես ամսօրյա», 1896, № 3, էջ 90:*

*1 Հ. Տաշյանը (տե՛ս «Հայկականք աշխատասիրությունք հայագետ Պ. Ֆեթթերի», էջ 105) սխալմամբ հրատարակության թվականը համարում է 1888-ը:*

*2 Գրախոսությունները՝ **Ստ. Մալխասյանց**, «Մշակ», 1898, 11 ապրիլի, № 58, էջ 1-2: Նույնի՝ «Մշակ», 1902, 3 դեկտեմբերի, № 267, էջ 2-3: **Ա. Բ.**, «Մշակ», 1898, 20 հունիսի, № 107, էջ 3: **Հ. Տաշյան**, «Հանդես ամսօրյա», 1898, №№ 8-9, էջ 258-267 (ստորագր.՝ Հ. Յ. Տ.): **Բյութանացի**, «Բազմավեպ», 1898, № 6, էջ 291-296:*

*3 Գրախոսությունները՝ **Վ. Առաքելյան**, «Սովետական գրականություն», 1940, № 1, էջ 102-105: **Հր. Աճառյան**, «Տեղեկագիր» ԱրմՖանի, 1941, № 8 (13), էջ 89-90: **[Անստորագիր]**, «Ազդակ», օրաթերթ, Բեյրութ, 1942, 23 հուլիսի, № 37 (3485), էջ 2:*






# ՀԱՅՈՑ ՊԱՏՄՈՒԹԻՒՆ

ԹԱՐԳՄԱՆՈՒԹԻՒՆ, ՆԵՐԱԾՈՒԹԻՒՆ
ԵՒ ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆՆԵՐ
ԴՈԿՏՈՐ ՍՏ. ՄԱԼԽԱՍԵԱՆԻ

ՏՊԱՐԱՆ «ՅՈՒՍԱԲԵՐ»
ԳԱՀԻՐԷ
1953

*Ստ. Մալխասյանցի աշխարհաբար թարգմանության երկր. տպագրության անվանաթերթը (Կահիրե, 1953)*

XCIV + 2 չհամարակալված + 368 էջ:
Թարգմանչի առաջաբանով, ծանոթագրություններով և հավելվածներով: Թարգմանությունն իրականացվել է 1913 թ. Տփղիսի հրատարակության հիման վրա:

4. Ստ. Մալխասյանցի թարգմանության երկրորդ տպագրությունը.
**Մովսես Խորենացի, Հայոց պատմություն:**
Տե՛ս «Հուսաբեր», օրաթերթ, Կահիրե, 1952-1953:
Թերթոն:
1953 թվականի № 118-ից՝ ծանոթագրություններ:
№ 155-157-ը հավելված - «Սինխրոնիկ աղյուսակներ Խորենացու Պատմության Բ և Գ գրքերի համար»:
№ 158-162-ը հավելված - «Առաջին սինխրոնիկ աղյուսակ Հայոց Պատմության ըստ օտարազգի և ստույգ աղբյուրների»:

5. Ստ. Մալխասյանցի թարգմանության երրորդ տպագրությունը.
**Մովսես Խորենացի, Հայոց պատմություն:**
Կահիրե, տպ. «Հուսաբեր», 1953[1]:
20 + 581 էջ:
Տպագրությունը հին ուղղագրությամբ:

6. Ստ. Մալխասյանցի թարգմանության չորրորդ տպագրությունը.
**Մովսես Խորենացի, Հայոց պատմություն:**
Հայպետհրատ: Երևան, 1961:
448 էջ:

---

**Հ. Թիրաքյան**, «Լրաբեր», օրաթերթ, Նյու Յորք, 1944, 24 հուլիսի, 3 օգոստոսի: **Վ. Մ. Քյուրքճյան**, «Նոր Գիր», եռամսյա հանդես գրականության և արվեստի, Նյու Յորք, 1944, № 2 (22), էջ 173-186, № 3 (23), էջ 255-256: **Ն. Ակինյան**, «Ազդարար», շաբաթաթերթ, Բեյրութ, 1944, 3 հունիսի, № 83, էջ 6, 10 հունիսի, № 84, էջ 6, 17 հունիսի, № 85, էջ 7-8, 24 հունիսի, № 86, էջ 2 (վերջ): Նույնը տե՛ս նաև «Սևան», պարբերագիրք գրականության և արվեստի, հատ. Ա, Հալեպ, 1946, էջ 91-94, հատ Բ, Հալեպ, 1946, էջ 98-101: **Գեղամ Գեղակ**, «Հայրենիք», օրաթերթ, Բոստոն, 1944, 13 սեպտեմբերի: **Վ. Մ. Քյուրքճյան**, «Նոր Գիր», ամսաթերթ, Նյու Յորք, 1944, № 2, էջ 173-186:

[1] Գրախոսությունները՝ **Գ. Գյուզալյան**, «Ակոս», ամսագիր, Բեյրութ, 1953, № 10, էջ 63-75: **Ա. Սաֆրաստյան**, «Հայաստանի կոչնակ», ազգային, քաղաքական, տնտեսական, գրական, գեղարվեստական, կրոնաբարոյական ամսագիր, Նյու Յորք, 1956, № 49, 8 դեկտեմբերի էջ 1156-1158, № 50, 15 դեկտեմբերի, էջ 1180-1183:

Հրատարակչությունն անհրաժեշտ է համարել որոշ կրճատումներ կատարել ծանոթագրությունների և խմբագրական ու ոճական փոփոխություններ՝ թարգմանության մեջ:

7. Ստ. Մալխասյանցի թարգմանության հինգերորդ տպագրությունը.
**Մովսես Խորենացի, Պատմություն Հայոց:**
«Հայաստան» հրատարակչություն: Երևան, 1968[1]:
419 էջ:
Լույս է տեսել «Հայ մատենագիրներ» մատենաշարով: Թարգմանությունը բնագրի հետ համեմատել ու խմբագրել են Վ. Դ. Առաքելյանը և Ա. Ա. Աբրահամյանը:

8. Ստ. Մալխասյանցի թարգմանության վեցերորդ տպագրությունը.
**Մովսես Խորենացի, Հայոց պատմություն:**
Երևանի համալսարանի հրատարակչություն: Երևան, 1981:
426 էջ:
Լույս է տեսել «Ուսանողի գրադարան» մատենաշարով: Թարգմանությունը հրատարակության է պատրաստել բան. գիտ. թեկնածու Գ. Գ. Անանյանը:

9. Ստ. Մալխասյանցի թարգմանության յոթերորդ տպագրությունը.
**Մովսես Խորենացի, Հայոց պատմություն:**
Երևանի համալսարանի հրատարակչություն, Երևան, 1981:
588 էջ:
Համդիպադրությամբ Տփղիսի 1913 թ. քննական հրատարակության: Առանց ներածության և ցանկերի: Հրատարակության է պատրաստել բանասիրական գիտ. թեկ. Գ. Գ. Անանյանը: Լույս է տեսել «Ուսանողի գրադարան» մատենաշարով:

10. Ստ. Մալխասյանցի թարգմանության ութերորդ տպագրությունը:
**Մովսես Խորենացի, Հայոց պատմություն:**
«Հայաստան» հրատարակչություն: Խմբագիր՝ Գ. Խ. Սարգսյան: Երևան, 1990:
322 էջ:
Լույս է տեսել Մովսես Խորենացու «Հայոց պատմության» 1500-ամյակի առթիվ:

---

[1] Գրախոսությունները՝ **H. Berberian, «REArm», 1968, tome V,** էջ 495: **К. С. Карганов, «Литературная Армения», 1969, № 3,** էջ 85-86.

*11. Թարգմանություն Արփիար Գարամանյանի.*
***Մովսես Խորենացի, Պատմություն Հայոց։***
*Արևելահայերենը արևմտահայերենի վերածում՝ Արփիար Գարամանյան։ «Հայոցի» մատենաշար, թիվ 4։*
*Բեյրութ, 1995։*
*232 էջ[1]։*

*12. Ստ. Մալխասյանցի թարգմանության իններորդ տպագրությունը։*
***Մովսես Խորենացի, Հայոց պատմություն։***
*«Հայաստան» հրատարակչություն, Երևան, 1997։ Խմբագիր՝ Գ. Խ. Սարգսյան։*
*552 էջ։*
*Լույս է տեսել Հայաստանում քրիստոնեության ընդունման 1700-ամյակին նվիրված մատենաշարով։*
*Հավելումներ՝ **Գ. Խ. Սարգսյան,** Երկու խոսք, էջ 332-334։*
*Հավելված Ա. Դրուագ չորրորդ - «Մովսէսի Խորենացւոյ վերադարձութիւն ի վերայ երեցունց դրուագեալ հատուածին»։ Բնագրի վերականգնման փորձ, ուսումնասիրություն և ծանոթագրություններ Արտաշես Մաթևոսյանի, էջ 336-511։*
*Հավելված Բ. **Ա. Մաթևոսյան,** Մովսես Խորենացին և Աթանաս Տարոնացու ժամանակագրությունը, էջ 512-531։*
*Հավելված Գ. **Ա. Մաթևոսյան,** Մովսես Խորենացին Մեսրոպատեղծ գրերի մասին, էջ 532-550։*

*13. **Մովսես Խորենացի, Պատմություն Հայոց։***
*Աշխարհաբար թարգմանությունը, առաջաբանը և ծանոթագրությունները Բ. Ուլուբաբյանի։*
*Երևան, «Տիգրան Մեծ» հրատարակչություն, 1999։ Խմբագիր՝ Մաթևոս Մաթևոսյան։*
*244 էջ։*

*14. Բ. Ուլուբաբյանի թարգմանության երկրորդ տպագրությունը։*
***Մովսես Խորենացի, Պատմություն Հայոց։***
*«Գասպրինտ» հրատարակչություն, Երևան, 2003[2]։ Խմբագիր՝ Կիմ Ղահրամանյան։*

---

*[1] Գրախոսությունները՝ **Ռ. Հարությունյան,** «Գլաձոր», տարեգիրք, 1996, Զ տարի, Բեյրութ, էջ 103-107։ **Պ. Հ. Հովհաննիսյան,** «Ազգ», օրաթերթ, 1998, 29 հոկտեմբերի, № 202, էջ 6։ **Հ. Արսլանյան,** «Գլաձոր», տարեգիրք, Է տարի, Բեյրութ, 1998, էջ 101։*
*[2] Գրախոսությունը՝ **Պ. Հ. Հովհաննիսյան,** «Քրիստոնյա Հայաստան», երկշաբաթաթերթ, Ս. Էջմիածին, 2003, հոկտեմբեր, Բ, № 20 (160), էջ 8։*

*Լույս է տեսել Հոգողությամբ Մեսրոպ արքեպ. Աչճյանի, մեկենասությամբ Հայկ և Անահիտ Մարգարյանների:*
*372 էջ:*

## Դ. ԹԱՐԳՄԱՆՈՒԹՅՈՒՆՆԵՐ ԱՅԼ ԼԵԶՈՒՆԵՐՈՎ

***1. Լատիներեն թարգմանություն Գուլիելմուս և Գեորգ Վիստոն եղբայրների.***

*Mosis Chorenensis Historiae Armeniacae. Libri III. Accedit ejusdem Scriptoris Epitome Geographiae. Praemittitur Praefatio, quae de Litteratura, ac Versione Sacra Armeniaca agit... Armeniace ediderunt, Latine verterunt, Notisque illustrarunt Gulielmus et Georgius, Gul. Whisthoni Filii, Aulae Clarensis in Academia Cantabrigiensi aliquandiu Alumni.*

*Londini: Ex officina Caroli Ackers Typographi; Apud Joannem Whistonum Bubliopolam. MDCCXXXVI (1736)*[1].

*396 + 16 չհամարակալված էջ:*

*Հայերեն բնագիրը և լատիներեն թարգմանությունը: Թարգմանիչների առաջաբանով և ծանոթագրություններով: Ամբողջական թարգմանություն, որը կատարվել է Հայերեն բնագրի առաջին՝ 1695 թ. Ամստերդամի հրատարակությունից: Վիստոն եղբայրներն օգտվել են նաև մեկ այլ ձեռագրից, որի տարընթերցվածները նշում են իբրև ծանոթություն: 333-րդ էջից՝ «Mosis Chorenensis. Epitome geographiae»:*

***2. Ռուսերեն թարգմանություն Հովսեփ Հովհաննիսյանի.***

*ա)* **Армеиская исторія сочиненная Моисеемъ Хоренскимъ съ краткимъ географическимъ описаніемъ Древней Арменіи. Переведъ съ Армѣнскаго на Россійскій языкъ архидіаконъ Іосиф Іоаннесовъ. Часть I. Санкт-Петербургъ, въ медицинской типографіи, 1809 года.**

*6 չհամարակալված + IV + 355 + XIII էջ:*

*Սույն թարգմանության առաջին մասն ընդգրկում է Խորենացու Պատմության Ա և Բ գրքերը: Թարգմանչի առաջաբանով և ծանոթագրություններով: Թարգմանությունն իրականացվել է ըստ Վիստոնյան Հրատարակության:*

---

*[1] Մ. Աբեղյանը (Առաջաբան, էջ ՄԴ), Ա. Ղազիկյանը (էջ 2053), Վ. Լանգլուան (էջ 51), Ք. Պատկանյանցը (*«Библиографический очерк армянской исторической литературы», СПб., 1879, *էջ 31), Գ. Զարբհանալյանը («Հայկ. մատենագիտություն», էջ 270), Խորեն Ստեփանեն (էջ Հ), Ստ. Մալխասյանցը (Առաջաբան, էջ XC), Ա. Սալմասյանը (էջ 101), Ֆեթթերը (էջ 104), Լ. Տեր-Մկրտչյանը (էջ 24), Հրատարակության թվականը սխալմամբ համարում են 1733-ը: Ի դեպ, Սալմասյանն այս Հրատարակությունը [illegible] (էջ [illegible] և էջ 60), սխալմամբ կարծելով, թե դրանք տարբեր Հրատարակություններ են:*

# АРМЕНСКАЯ ИСТОРІЯ

СОЧИНЕННАЯ

МОИСЕЕМЪ ХОРЕНСКИМЪ

СЪ КРАТКИМЪ

ГЕОГРАФИЧЕСКИМЪ ОПИСАНІЕМЪ

ДРЕВНЕЙ АРМЕНІИ.

ПЕРЕВЕЛЪ
съ Армянскаго на Россійскій языкъ
Архидіаконъ
*Іосифъ Іоаннесовъ.*

САНКТПЕТЕРБУРГЪ,
въ Медицинской Типографіи
1809 года.

*Հովսեփ Հովհաննիսյանի ռուսերեն*
*թարգմանության անվանաթերթը*

բ) Арменская исторія сочиненная Моисеемъ Хоренскимъ. Перевелъ съ Армянскаго на Россійскій языкъ архидіаконъ Іосиф, Іоаннесовъ. Часть II. Санкт-Петербургъ. 1809 года.

4 չհամարակալված + 187 էջ:

Այս երկրորդ մասն ընդգրկում է Խորենացու Պատմության Գ գիրքը: Որից հետո մինչև 242-րդ էջը՝ «Моисея Хоренского Географія».

3. **Ֆրանսերեն թարգմանություն Պ. Ե. Լը Վայյան դը Ֆլորիվալի.**

Histoire d'Arménie de Moïse de Khorenatzi, auteur arménien classique du V-me siècle. Texte Arménien et traduction française Traduite par P. E. Le Vaillant de Florival, Paris, 1836.

IV + 218 էջ:

Բնագրին անհարազատ, սխալաշատ թարգմանություն, որը կատարվել է վենետիկյան 1827 թվականի տպագրությունից:

4. **Ֆրանսերեն այլ թարգմանություն Պ. Ե. Լը Վայյան դը Ֆլորիվալի:**

ա) Moïse de Khorène, auteur du V-e siècle. Histoire d'Arménie. Texte arménien, et traduction française par P. E. Le Vaillant de Florival, chevalier de la Légion d'Honneur, professeur d'Arménien à l'ecole royale et spéciale des languages orientales vivantes près la Bibliothèque du roi (à Paris), Membre de L' Académie Arménienne de Saint-Lazare, ancien élève pensionnaire de l'école royale des Chartes. Tome premier. Venise, typographie Arménienne de Saint-Lazare, 1841[1].

XVIII + 389 + 15 չհամարակալված էջ:

Հայերեն բնագիրը և ֆրանսերեն թարգմանությունը: Սա միանգամայն նոր և ընտիր թարգմանություն է՝ կատարված վենետիկյան 1827 թ. տպագրությունից՝ Գ. Այվազովսկու հսկողությամբ: Սույն առաջին հատորն ընդգրկում է Խորենացու Պատմության Ա և Բ գրքերը:

բ) Moise de Khorène, auteur du V-e siècle. Histoire d'Arménie. Texte arménien, et traduction française par P. E. Le Vaillant de Florival. Tome second. Venise, typographie Arménienne de Saint-Lazare, 1841.

207 + 27 չհամարակալված էջ:

Սույն երկրորդ հատորն ընդգրկում է Խորենացու Պատմության Գ գիրքը՝ Հայերեն բնագիրը և ֆրանսերեն թարգմանությունը:

---

[1] Ք. Պատկանյանցը (տե՛ս «Библиографический очерк», էջ 30) սխալմամբ նշում է 1842 թվական:

ՄՈՎՍԻՍԻ

# ԽՈՐԵՆԱՑՒՈՅ

## ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ՀԱՅՈՑ



Ի ՎԵՆԵՏԻԿ

Ի ՍՈՒՐԲ ՂԱԶԱՐ

ՌՄՀԶ

*Արսեն Բագրատունու Հրատարակության անվանաթերթը (Վենետիկ, 1827)։*

5. **Իտալերեն թարգմանություն Ն. Թոմմազեոյի.**

*Storia di Mosè Corenese. Versione italiana, illustrata dai monaci Armeni Mechitaristi, ritoccata quanto allo stile da N. Tommasei (Collana degli storici armeni. Tradatti e illustrati, I). Venezia, typogrofia Armena di San Lazzaro, 1841*[1].

*XVIII + 403 + 16 չհամարակալված էջ:*

*Թարգմանչի առաջաբանով և ծանոթագրություններով: Թարգմանությունը կատարված է վենետիկյան 1827 թ. տպագրությունից՝ Գ. Այվազովսկու անմիջական հսկողությամբ*[2]*:*

6. **Իտալերեն թարգմանություն Ջ. Կապելետտիի.**

*Mosè Corenese, Storico armeno del quinto secolo. Versione di Giuseppe Cappelletti, Venice, G. Antonelli, 1841.*

*XVI + 320 էջ:*

*Թարգմանչի առաջաբանով և ծանոթագրություններով: Թարգմանությունը կատարված է 1827 թ. վենետիկյան տպագրությունից:*

7. **Պ. Ե. Լը Վայյան դը Ֆլորիվալի ֆրանսերեն երկրորդ թարգմանության երկրորդ հրատարակությունը.**

*ա) Moïse de Khorène, auteur du V-e siècle. Histoire d'Arménie. Texte arménien et traduction française, avec notes explicatives et précis historique sur l'Arménie. Ouvrage dédié à S. M. Impériale Nicolas I-er empereur de toutes les Russies. Par P. E. Le Vaillant de Florival, professeur de l'Arménien à l'école Royale et spéciale des langues orientales vivantesprès la Bibliothèque Royale, membre de L' Académie Arménienne de S. Lazare de Venis. Tome premier Paris, cher M-me V-e Don-*

---

*[1] Գ. Զարբհանալյանը («Հայկական մատենագիտություն», էջ 270) սխալմամբ հրատարակության թվականն է համարում 1843-ը, իսկ Վ. Լանգլուան (էջ 52) և Ն. Ստեփաննեն («Առաջաբան», էջ Հ)՝ 1849-ը, Ք. Պատկանյանցը («Հայ պատմագիրների երկասիրությանց ցուցակը», էջ 10)՝ 1840-ը, իսկ «Библиографический очерк...» գրքում՝ 1849 (էջ 30):*

*[2] Հայագիտության մեջ տարածված է այն կարծիքը, թե իբր այս հրատարակության թարգմանիչը ոչ թե Թոմմազեոն է, այլ Գ. Այվազովսկին: Ըստ երևույթին այս կարծիքը հենվում է «Արևելյան մամուլում» վերջինիս մահվան կապակցությամբ տպագրված հոդվածի հետևյալ տողերի վրա՝ «Ի նմին նամականի հրատարակեաց և զիտալերէն թարգմանութիւնս Պատմութեանց Մովսիսի Խորենացւոյ և Ագաթանգեղոսի..., օգնական իւր ունելով զքաջանուն մատենագիրն իտալացի զԹոմմազէոյ» (1880, № 5, էջ 6-17): Սակայն, ինչպես ցույց ենք տվել վերևում, նման պնդումը թյուրիմացության արդյունք է:*

*dey-Dupré, Libraire, Rue des Pyramides, 8. Et cher l'auteur [Venise, 1845]*[1].

*XII + 389 + 15 չհամարակալված էջ*[2]:

*Հայերեն բնագիրը և ֆրանսերեն թարգմանությունը: Այս հատորն ընդգրկում է Խորենացու Պատմության Ա և Բ գրքերը: Սա դը Ֆլորիվալի 1841 թ. վենետիկյան թարգմանության վերահրատարակությունն է՝ առանց փոփոխությունների:*

*բ) Moïse de Khorène, auteur du V–e siècle. Histoire d'Arménie. Texte arménien et traduction française... Par P. E. Le Vaillant de Florival... Tome second... [Venise, 1845].*

*207 + 29 չհամարակալված + IV էջ:*

*Հայերեն բնագիրը և ֆրանսերեն թարգմանությունը: Այս հատորն ընդգրկում է Խորենացու Պատմության Գ գիրքը:*

***8. Ն. Թոմմազեոյի իտալերեն թարգմանության երկրորդ հրատարակությունը.***

*Storia di Mosè Corenese. Versione italiana, illustrata dai monaci Armeni Mechitaristi, ritoccata quanto allo stile da N. Tommaseo. Seconda edizione. Venezia, typografia Armena di San Lazaro, 1850*[3].

*XVIII + 403 + 16 չհամարակալված էջ:*

*Սա Թոմմազեոյի վենետիկյան 1841 թ. թարգմանության վերահրատարակությունն է:*

***9. Ռուսերեն թարգմանություն Մկրտիչ Էմինի.***

*Исторія Арменіи Моисея Хоренскаго. Перевелъ съ Арменска-*

---

*1 Տպագրության վայրը և տարեթիվը գրքի տիտղոսաթերթից բացակայում են: Հենվելով տիտղոսաթերթի վրա հիշատակված «Փարիզ» տեղեկության վրա՝ ուսումնասիրողներն այն համարել են փարիզյան հրատարակություն: Մինչդեռ, ինչպես ցույց է տվել Հ. Դավթյանը (էջ 320-321), այստեղ հիշատակված է գրավաճառի անունը և հասցեն: Գրքի հրատարակության վայրի ճշգրտման համար օգնություն է ցույց տալիս տիտղոսաթերթից առաջ եղած թերթիկի վրայի հետևյալ տողը. «Venise, imprimerie Arménienne de Saint-Lazare»: Տպագրության թվականը (1845) դրել ենք ըստ մատենագիտական աղբյուրների:*

*2 Գրախոսությունները տե՛ս [Անստորագիր], «Բազմավեպ», 1845, № 10, էջ 320: [Անստորագիր], «Ազգասեր», քաղաքական, բարոյական և բանասիրական հանդես, Կալկաթա, 1846, հատ. Բ, № 42, Մէ3 30, էջ 175:*

*3 «Հայ ժողովրդի պատմություն» ակադեմիական հրատարակության V հատորում սխալմամբ նշված է 1851 (էջ 592):*

го и объяснил Н. Эминъ. Москва. Въ типографіи Каткова и К⁰, 1858[1].

384 + VIII էջ:

Թարգմանչի առաջաբանով, ծանոթագրություններով և հավելվածներով: Թարգմանության համար հիմք է հանդիսացել 1843 թ. վենետիկյան հրատարակությունը (Մ. Էմինի առաջաբանում սխալմամբ՝ 1846 թ., տե՛ս էջ 17):

10. Ֆրանսերեն թարգմանություն Վ. Լանգլուայի.

Moïse de Khorène Histoire d'Arménie en trois livres, traduction nouvelle. Accompagnée de notes historiques critiques et philologiques. (In: «Collection des Historiens anciens et modernes de l'Arménie, publiée en français... par Victor Langlois»). Tome deuxième Première période. Historiens arméniens du cinquième siècle. Paris, Librairie de Firmin Didot Fréres Fils et Gie imprimeurs de L' Institut, rue Jacob 56, MDCCCLXIX 1869[2].

էջ 47-175:

Թարգմանչի առաջաբանով և ծանոթագրություններով[3]: Թարգմանությունը կատարված է Վենետիկի 1865 թ. տպագրությունից:

11. Գերմաներեն թարգմանություն Մ. Լաուերի.

Des Moses von Chorene. Geschichte Gross-Armeniens. Aus dem Armenischen übersetzt von Dr. M. Lauer. Regensburg. G. J. Manz. 1869[4].

IV + 240 էջ:

Թարգմանչի առաջաբանով և ծանոթագրություններով: Սխալաշատ և խիստ վիճահարույց թարգմանություն է[5], որը կատարվել է 1865 թ. վենետիկյան տպագրությունից:

---

1 Գրախոսությունը՝ Զ. Մսերյանց, «Ծուաքաղ», ամսագիր, Մոսկվա, 1859, հատ. 1, էջ 255:

2 Խ. Ստեփանեն սխալմամբ հրատարակության թվականը համարել է 1857-ը (էջ Հ), իսկ Զարբհանալյանը («Պատմություն հայկական դպրության», էջ 374)՝ 1870-ը:

3 Գրախոսությունը՝ E. Prud'homme, «Journale Asiatique», 1869, № 1, հունվար, էջ 93-95:

4 Գրախոսությունը՝ Հայաստր, «Հայկական աշխարհ», 1869, № 9, էջ 328:

5 Մ. Լաուերը Խորենացու Պատմության Բ գիրքն ամբողջությամբ զետեղել է նաև իր կազմած «Armenische Chrestomathie, Vien, 1881, էջ 179» գրքում (տե՛ս ստորև էջ 46):

MOSES KHORENATS'I

# PATMUT'IWN HAYOTS'

## (History of the Armenians)

A FACSIMILE REPRODUCTION
OF THE 1913 TIFLIS EDITION
WITH AN INTRODUCTION BY
ROBERT W. THOMSON



CARAVAN BOOKS
DELMAR, NEW YORK
1981

*Քննա-բաղդատական Հրատարակության
երկրորդ տպագրության անվանաթերթը*

*12. Հունգարերեն թարգմանություն Կրիշտոֆ Սոնգոտի.*
*Chorenei Mózes, Nagy - Örményország története.*
*Eredeti örményből forditotta és magyarázó jegyzetekkel ellátta,*
*Szongott Kristóf tanár, az «Armenia» szerkesztője.*
*Szamosújvártt, Todorán Endre «Aurora» Könyvnyomgája, 1892*[1].
*298 էջ:*
*Թարգմանչի առաջաբանով և ծանոթագրություններով: Թարգմանությունը կատարված է 1881 թ. վենետիկյան տպագրությունից:*

*13. Ռուսերեն այլ թարգմանություն Մկրտիչ Էմինի.*
*Исторія Арменіи Моисея Хоренскаго. Новый переводъ Н. О. Эмина. (С примъчаніями и приложеніями). Посмертное издание. Москва. Типография В. А. Гатцыкъ (Д. Чернышевский), Никитскій бульв., д. Гатцукъ, 1893*[2].
*XXXVI + 324 էջ:*
*Թարգմանչի առաջաբանով, ծանոթագրություններով և Հավելվածներով: Թարգմանության Համար Հիմք է Հանդիսացել 1865 թ. վենետիկյան տպագրությունը:*

*14. Պարսկերեն թարգմանություն Գրիգոր Եղիկյանի.*
*Մովսես Խորենացի, Պատմություն Հայոց:*
*Թարգմանությունը, առաջաբանը և ծանոթագրությունները Գրիգոր Եղիկյանի:*
*Տե՛ս «Իրան - է - Բոնունի», ամսագիր, Թեհրան, 1942-1943:*

*15. Անգլերեն թարգմանություն Ռ. Թոմսոնի.*
*Moses Khorenats'i, History of the Armenians. Translation and Com-*

---

*[1] Գրախոսությունները՝ **I. Simay**, «Armenia», Samosújvártt, 1891. № 12, էջ 353-355. [Անստորագիր], «Armenia», 1891, № 10, էջ 318. [Անստորագիր], «Armenia», 1892, № 12, էջ 374-381: [Անստորագիր], «Armenia», 1893, № 1, էջ 29-31, № 2, էջ 61-63. **Esztegár László**, «Armenia», 1893, № 3, էջ 87-90. **Gopcsa László**, «Armenia», № 3, էջ 90-92. **Kuun Géza**, «Armenia», 1893, № 5, էջ 236-243:*

*[2] Գրախոսությունները՝ **Ստ. Մալխասյանց**, «Տարազ», գեղարվեստական, գրական և քննադատական Հանդես, Թիֆլիս, 1893, № 26, էջ 413-416: [Անստորագիր], «Մշակ», 1893, 9 նոյեմբերի, № 5, էջ 2:*

*mentarry of the Literary Sources by Robert W. Thomson. Harvard University Press. Cambridge, Massachusetts, London, England, 1978*[1].

*VIII + 2 չհամարակալված + 408 էջ:*

*Թարգմանչի առաջաբանով, ծանոթագրություններով և վերջաբանով: Թարգմանության համար հիմք է հանդիսացել Տփղիսի 1913 թ. գիտական հրատարակությունը:*

*16.* **Ռ. Թոմսոնի անգլերեն թարգմանության վերահրատարակությունը.**

*Moses Khorenats'i, History of the Armenians. Second printing. Harvard University Press. 1980.*

*VIII + 2 չհամարակալված + 408 էջ:*

*17.* **Վրացերեն թարգմանություն Ա. Գ. Արդալաձեի.**

*Մովսես Խորենացի, Հայոց Պատմություն: Վրացական ԽՍՀ ԳԱ հրատարակչություն: Թբիլիսի, 1984*[2], *302 էջ:*

*Թարգմանչի առաջաբանով և ծանոթագրություններով:*

*18.* **Պարսկերեն թարգմանություն Գ. Մ. Նալբանդյանի.**

*Մովսես Խորենացի, Հայոց պատմություն:*

*Թարգմանությունը, առաջաբանը և ծանոթագրությունները պրոֆ. Գ. Նալբանդյանի:*

---

[1] Գրախոսությունները՝ **S. J. Poggi**, «Orientalia Christiana periodica», 1979, v. 45, p. 432-433. **V. Nersessian**, «Journal of Ecclesiastical history», v. 30, № 4, october, 1979, pp. 479-480. **H. Tretter**, «Ostkirchlicle Studian», Würzburg, 1979, t. 28, helf 2-3. **J.-P. Mahe**, «Journale Asiatique», Paris, 1979, t. 267, № 3-4, pp. 455-457. Նույնի՝ «Revue des Etudes Byzantines», t. 38, 1980, p. 301-302. **E. Schülz**, «Acta Orient. Hung.», XLI, 1987, p. 164. **Լ. Հ. Տեր-Պետրոսյան**, «Պատմա-բանասիրական հանդես», 1980, № 1, էջ 268-270: **Գ. Հ. Հովհաննիսյան**, «Բանբեր Երևանի համալսարանի», 1981, № 3, էջ 237-239:

[2] Գրախոսությունները՝ **[Անստորագիր]**, «Ալիք», օրաթերթ, Թեհրան, 1985, 29 մայիսի, № 110, էջ 4: **Ш. Шавалашвили**, տե՛ս «Мир книг», газета, Тбилиси, 1985, 26 июня (վրացերեն):

ՍՐԲՈՅ ՀՕՐՆ ՄԵՐՈՅ

# ՄՈՎՍԻՍԻ ԽՈՐԵՆԱՑՒՈՅ

## ՄԱՏԵՆԱԳՐՈՒԹԻՒՆՔ



Ի ՎԵՆԵՏԻԿ

Ի ՏՊԱՐԱՆԻ ՍՐԲՈՑՆ ՂԱԶԱՐՈՒ

ՅԱՄԻ 1843 ՔՄՂՐ

*Մովսես Խորենացու Մատենագրության առաջին Հրատարա*
*անվանաթերթը (Վենետիկ, 1843)*

*Երևանի Համալսարանի Հրատարակչություն։*

*Երևան, 1984*[1]*։*

*340 էջ։*

*Թարգմանչի առաջաբանով և ծանոթագրություններով։*

***19. Ռուսերեն թարգմանություն Գ. Խ. Սարգսյանի.***

*Мовсес Хоренаци, История Армении в трех частях, рассказанная Мовсесом Хоренаци по просьбе Саака Багратуни.*

*Տե՛ս «Литературная Армения», 1990, № 6, էջ 85-103; № 7, էջ 90-112; № 8, էջ 80-98; № 9, էջ 68-98։*

***20. Գ. Խ. Սարգսյանի ռուսերեն թարգմանության երկրորդ տպագրությունը.***

*Мовсес Хоренаци, История Армении. Перевод с древнеармянского языка, введение и примечания Гагика Саркисяна.*

*Ереван, 1990.*

*L + 293 стр.*[2]*.*

*Թարգմանչի առաջաբանով և ծանոթագրություններով։ Թարգմանության համար հիմք է հանդիսացել Տփղիսի 1913 թ. գիտական հրատարակությունը։ Լույս է տեսել Մովսես Խորենացու «Հայոց պատմության» 1500-ամյակի առթիվ՝ Ս. Ս. Արևշատյանի խմբագրությամբ։*

***21. Ֆրանսերեն թարգմանություն Աննի և Ժան-Պիեր ՄաՀեների.***

*Moïse de Khorène. Histoire de L'Arménie. Nouvelle traduction de L'Arménien classique par Annie et Jean-Pierre Mahé (d'après Victor Langlois).*

*Avec une introduction et des notes.*

*NRF. L'aube des peuples. Collimard.*

*Paris, 1993.*

*456 էջ*[3]*։*

---

[1] *Գրախոսությունները՝ Հ. Փափազյան, «Գրքերի աշխարհ», 1985, 16 հունիսի, № 6, էջ 5։ Ա. Պապոյան, «Գրական թերթ», 1985, 13 սեպտեմբերի, էջ 2-3։ Գ. Ասատրյան, «Գրական թերթ», 1989, 1 դեկտեմբերի, № 49, էջ 3։ К. Эйюби, «Коммунист», газета, Ереван, 1986, 23 февраля, № 44, էջ 3։*

[2] *Գրախոսությունը՝ [Անստորագիր], «Литературная Армения», 1991, № 11-12, стр. 168-169։*

[3] *Գրախոսությունները՝ Ա. Կռանյան, «Մասիս», շաբաթաթերթ, 1994, № 60 (1271), փետրվար, էջ 47 (ստորագր.՝ Հ. Ա. Կ.)։ Ա. Պերպերյան, «Սփյուռք», ամսագիր, Բեյրութ, 1994, ապրիլ-մայիս, № 4-5, էջ 82։*

*nal Asiatique.- Paris, 1897.- IX, T. 7.- P. 339.*

**ԱՆՍՏՈՐԱԳԻՐ.** *Moses of Chorene//The New century Ciclopedia of names.- Volume 2.- New York, 1954.- P. 2838.*

**ԱՆՍՏՈՐԱԳԻՐ.** *Moïse de Khoren//Dictionnaire Encyclopédique quillet.- K-M.- Paris, 1969.- P. 4327.*

**ԱՆՍՏՈՐԱԳԻՐ.** *Moses of Chorénе//Webster's biographical gictionary.- Springfield.- Massachusets, 1974.- P. 1062.*

**ԱՆՍՏՈՐԱԳԻՐ.** *Movses Khorenatsi (Moses of Khoren)//Great Soviet Encyclopedia.- V. 16.- New York.- London, 1977.- P. 589.*

**ԱՆՍՏՈՐԱԳԻՐ.** *Moses of Khoren//The New Encyclopaedia Britannica.- Volume 8.- Chicago, 1992.- P. 352.*

**ԱՆՍՏՈՐԱԳԻՐ.** *Dictionnaire historique, géographique, philologique et critique pour servis d'annotations à L'Histoire d'Arménie.- Paris, 210 p.- (Երկսյուն): Խորենացու «Հայոց պատմության» անվանացանկն է՝ դարձած մանրամասն բառարան (Հրատ. Հեղինակը և թվականը նշված չեն):*

*Քանզի ամբարտաւանութիւն և մարդահաճութիւն առ ի նորա վարս տեղի գտանել երբէք ոչ կարացին. այլ հեզ և լաւակամ և բարեխորհուրդ գոլով, և երկնայնոցն զարդարեալ սովորութեամբք զինքն բոլորից ցուցանէր: Վասն զի գոյր տեսլեամբ հրեշտակական, մտօք ծննդական, բանիւ պայծառ, գործովք ժուժկալ, մարմնով արտափայլեալ, սարասիւք անճառ, խորհրդակցութեամբ մեծ, հաւատով ուղիղ, յուսով համբերողական, սիրով անկեղծաւոր, ուսուցանելով անձանձրոյթ:*

*Մովսես Խորենացի,*
*Պատմութիւն Հայոց,*
*(Գիրք Գ, գլ. կե)*



Գործ Հմայակ Հակոբյանի



Գործ Գևորգ Ավագյանի



Գործ Արշակ Ֆեթվաճյանի



Գործ Հրաչյա Ռուխկյանի

# ՄՈՎՍԵՍ ԽՈՐԵՆԱՑՈՒ «ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ՀԱՅՈՑ»-Ի ԵՐԿԱՍԻՐՈՂՆԵՐԻ ԿԵՆՍԱԳՐԱԿԱՆ ԲԱՌԱՐԱՆ

Մովսես Խորենացու «Հայոց պատմության» հրատարակության ու թարգմանության հետ են աղերսվում հայ և օտար բազմաթիվ նշանավոր հայագետներ: Մովսես Խորենացու երկերի մատենագիտությունը կազմելուց հետո անհրաժեշտություն զգացվեց անդրադառնալ բոլոր նրանց, ովքեր զբաղվել են Պատմության հրատարակության և թարգմանության աշխատանքներով: Այսինքն՝ անհրաժեշտ համարեցինք ի մի հավաքել ու դասակարգել հայ և եվրոպացի բոլոր այն հայագետների կենսագրականները, ովքեր անմիջականորեն զբաղվել են Խորենացու Պատմության հրատարակությամբ և թարգմանությամբ: Դրա անհրաժեշտությունը զգալի է: Խոստովանելի է, որ մեզանում գոյություն ունեցող կենսագրական բառարաններն ու հանրագիտարանները թերի են, եղած կենսագրականներն էլ խիստ սխեմատիկ: Նրանցում, ի դեպ, տեղ չեն գտել, ի չարս շատ անվանի հայագետների, նաև Խորենացու Պատմության երկասիրողներ Սարգիս Սարաֆյանի, Հովսեփ Հովհաննիսյանի, Ջուզեպպե Կապպելետիի, Մաքսիմիլյան Լաուերի, Խորեն Ստեփանեի, Սեթ Հարությունյանի կենսագրականները: Ուստի այդ բացը մասամբ լրացնելու մտահոգությամբ է, որ կազմել ենք սույն կենսագրական բառարանը:

Բառարանում ժամանակագրական հաջորդականությամբ տրված են հայ և օտար քսանվեց երկասիրողների համառոտ կենսագրությունները: Լինելով տարբեր դարաշրջանների, տարբեր ազգությունների ու տարբեր նախասիրությունների տեր հեղինակներ՝ նրանց բոլորին միավորել և մի տեղ է հավաքել մի ընդհանուր ելակետ՝ Խորենացու Հայոց պատմությունը, որի հետ նրանք կապված են իրենց ընդհանուր գիտական հետաքրքրություններով ու ակնածանքով:

Ինչ խոսք, Խորենացու Պատմության երկասիրողների դիմապատկերների սույն համառոտ բառարանը որոշ պատկերացում կտա նաև խորենացիագիտության անցած ուղու և ձեռք բերած արդյունքների մասին: Այն անշուշտ, ցուցահանում է նաև քսանվեց երկասիրողներից յուրաքանչյուրի ներդրած վաստակն ընդհանրապես հայագիտության և մասնավորապես Պատմահոր անմահ երկի գիտական

*ուսումնասիրության, տարածման ու պրոպագանդման բնագավառներում:*

*Կարծում ենք, որ սույն բառարանը կնպաստի նաև խորենացիագիտության ամբողջական ու գիտական պատմության ստեղծման գործին:*

## ԹՈՎՄԱՍ ՆՈՒՐԻՋԱՆԻ ՆՈՒՐԻՋԱՆՑԱՆ
## (ԹՈՎՄԱՍ ԵՊԻՍԿՈՊՈՍ ՎԱՆԱՆԴԵՑԻ, ծն. թ. անհտ. - 1708)

*Ծնվել է Նախիջևանի Գողթն գավառի Վանանդ գյուղում: Սովորել է ծննդավայրի վարժարանում: Իրեն նվիրել է հոգևոր գործունեության, հեղինակել չափածո երկեր: 1670 թ. մեկնել է Եվրոպա, առժամանակ գործել է Կիպրոսում, Հռոմում և այլուր: 1673 թ. վերադառնալով հայրենիք՝ նշանակվել է Գողթնի Ս. Խաչ վանքի հոգևոր առաջնորդ, օծվել եպիսկոպոս: 1679 թ., իր հետ առնելով Ղուկաս և Միքայել եղբորորդիներին, դարձյալ մեկնել է Եվրոպա՝ տպագրական գործը զարգացնելու նպատակով: Լինում է Մարսելում, Հռոմում, Լիսաբոնում, Բրյուսելում, ի վերջո՝ 1694 թ. հաստատվում Ամստերդամում: Այստեղ Մատթեոս Հովհաննիսյան Վանանդեցու աջակցությամբ հիմնադրում է տպարան և տպագրում մի քանի արժեքավոր գործեր՝ «Համատարած աշխարհացոյց» (1695), Թոմա Գեմբացու «Ցաղագս համահետեւմանն Քրիստոսի» (1696), «Աստուածաշունչ Նոր կտակարան» (1698-1700), Ղուկաս Վանանդեցու «Գանձ չափոյ, կշռոյ, թւոյ, եւ դրամից բոլոր աշխարհի» (1696), «Տարակնոց» (1702-1703), «Ժամգիրք» (1705) և այլն:*

*1695 թվականին, Թովմաս Վանանդեցու ծախսով և աշխատասիրությամբ լույս է տեսնում Մովսես Խորենացու Պատմությունը: Դիմելով «Համայն ընթերցօղս» աշխատասիրողը նշում է. «Ես անպիտան և ունայն և թափուր յամենից լաւաց և օգտակարաց Թօմաս ծառայ ծառայից Աստուծոյ ի վայելուչ քաղաքէ Վանանդու Գողթնեաց, ձեռնամուխ եղեալ տպեցի զՁքնաղավէպ՝ և զԳեղեցկաչատ Պատմութիւնս, Նախնեաց մերոց, և Հայկազուննեաց Տոհմի համեղ՝ և ախորժալուր ոճիւ»: Այս տպագրության շնորհիվ է, որ Խորենացու Պատմությունը տարածվում է հայ իրականության մեջ, հայտնի դառնում Եվրոպայի գիտական շրջանակներին, հիմք դառնում այլալեզու թարգմանությունների համար: Սրանով սկիզբ է դրվում խորենացիագիտությանը: Միևնույն ժամանակ, այս տպագրությամբ Թովմաս Նուրիջանյանը դառնում է հայտնի և խիստ հարգված անուն, վայելում մեծ հեղինակություն: Այդ ժամանակ է, որ նրան աշակերտում է*

նշանավոր Յոախիմ Շրյոդերը, որն իր «Արամեան լեզուի գանձ» գրքի (1711) առաջաբանում բազում գովեստից խոսքեր է ասել իր ուսուցչի հիշատակին: Անձնական սերտ կապերի մեջ է եղել նաև նշանավոր փիլիսոփա Գ. Վ. Լայբնիցի, հավանաբար Իսրայել Օրու և այլոց հետ:

1707 թ. մայիսի 29-ին, Օքսֆորդում եղած ժամանակ, նրան շնորհվել է «Դոկտոր աստուածաբանութեան» պատվատիտղոսը:

Կյանքի վերջին շրջանում Թովմաս Նուրիջանյանը հետամուտ էր տպարանն ու տպագրած գրքերը Հայրենիք փոխադրելու, այնտեղ տպագրության գործը կազմակերպելու և դպրոց հիմնադրելու գաղափարին: Սակայն ծանր հիվանդությունն ու մահը Անտվերպենում (8 սեպտեմբերի, 1708 թ.) ի չիք են դարձնում նրա այդ ազնիվ մտադրությունը:

Թովմաս Նուրաջանյանի մարմինն ամփոփված է Անտվերպենի Նոտր Դամ Մայր եկեղեցու ավագ խորանում:

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ. **Լեո,** Հայկական տպագրություն, հատ. Ա (XVI-XVII դար), երկրորդ տպագրություն, Թիֆլիս, 1904, էջ 415-449: **Ա. Սարուխան,** Հոլանդան և հայերը ԺԶ-ԺԹ դարերում, Վիեննա, 1926: **Մ. Գ. Գրիգորյան,** Նոր նյութեր և դիտողություններ հրատարակիչ Վանանդեցվոց մասին, Վիեննա, 1969:

## ՀԵՆՐԻԿՈՍ ՅԱԿՈԲՈՒՍ ԲՐԵՆՆԵՐ (1669-1732)

Հենրիկոս Բրենները ծնվել է 1669 թ. սեպտեմբերի 13-ին Շվեդիայի Քրոնոբու բնակավայրում, քահանայի ընտանիքում: Սովորել է Աբո քաղաքի գիմնազիայում (1683-1687): Ավարտել է Լունդի (1687) և Ուպսալայի (1690) համալսարանները: Ուպսալայի համալսարանում նրան շնորհվել է Արվեստից մագիստրոսի տիտղոս: 1697 թ., Շվեդիայի թագավոր Կարլոս XI-ի կարգադրությամբ Պարսկաստան է ուղեկցել շվեդական պատվիրակ Լյուդվիգ Ֆաբրիցիուսին: Սպահանում եղած ժամանակ հետաքրքրվել է հայերի մասին, տեղեկություններ հավաքել նրանց պատմության վերաբերյալ: Հայերեն է սովորել դոմինիկյան միաբանության վանական Յոհաննես Բարթոլոմեուսի մոտ: Հենց վերջինս էլ Բրեններին նվիրում է Մովսես Խորենացու «Հայոց պատմության» մի համառոտված հայերեն ձեռագիր օրինակ, որն ինքն էր արտագրել Հռոմում: 1699 թ., Շվեդիա վերադարձի ժամանակ Բրենները լինում է նաև Հայաստանում և հայրենակ վայրերում, ծանոթանում հայ ժողովրդի պատմական անցյալին, հուշարձաններին, խորացնում իմացությունը հայոց լեզվից:

*1700 թվականին, երբ Բրեններն արդեն Ռուսաստանում էր, բռնկվում է ռուս-շվեդական պատերազմը: Որպես շվեդական քաղաքացի նա ձերբակալվում է ռուսական իշխանությունների կողմից և արգելափակվում: Բրենները բանտարկված մնաց ավելի քան 20 տարի (Կազան, Մոսկվա) և միայն Նիշտադյան հաշտության պայմանագրի կնքումից հետո (1721) հնարավորություն ունեցավ վերադառնալու հայրենիք: Այստեղ վարել է զանազան պաշտոններ՝ նշանակվել հնությունների արխիվի խորհրդական, թագավորական գրադարանի տնօրեն (1728-ից), արժանացել պրոֆեսորի կոչման, դասավանդել Ստոկհոլմի ուսումնական հաստատություններում:*

*Հ. Բրենները հեղինակ է դեպի Պարսկաստան Պետրոս Մեծի կատարած արշավանքի նկարագրության (1722-1723), հեղինակակից Կասպից ծովի ափերի վերաբերյալ մի քանի քարտեզների: Հ. Բրեններին, որպես արևելագետի, անշուշտ, բնորոշում է Մովսես Խորենացու Պատմության՝ նրա կատարած լատիներեն թարգմանությունը: Հ. Բրենները թարգմանությանը ձեռնամուխ եղավ ու ավարտեց բանտարկության տարիներին (1700-1721): Թարգմանությունը լույս տեսավ 1723 թ.՝ Ստոկհոլմում: Սա, ըստ էության, ոչ թե ամբողջական, այլ Խորենացու Պատմության երեք գրքերի համառոտված թարգմանություն է, համեմված առաջաբանով և հարուստ ծանոթագրություններով: Վերջիններս վկայում են աշխատասիրողի հմտությունը և քաջատեղյակությունը հին հայկական դասական գրականության մասին:*

*Հ. Բրենները մահացել է 1732 թ. օգոստոսի 29-ին, Ստոկհոլմում:*

*ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ. «Svensk biografisk lexikon», t. 6, Stockholm, 1926, p. 214-217: Պ. Հ. Հովհաննիսյան, Հենրիկոս Բրենները և Խորենացու Հայոց պատմության լատիներեն համառոտագրված առաջին թարգմանությունը, տե՛ս ՀՀՀ, Բեյրութ, 1999, հատ. 19, էջ 123-140:*

## ԳԵՎՈՐԳ ԵՎ ԳՈՒԼԻԵԼՄՈՒՍ ՎԻՍՏՈՆ ԵՂԲԱՅՐՆԵՐ

*Վիստոն եղբայրները վիթխարի դեր են խաղացել Մովսես Խորենացու «Հայոց պատմություն»-ը եվրոպական բանասիրական ու պատմագիտական մտքի հետ ծանոթացնելու գործում: Նրանց լատիներեն թարգմանությունը հիմք հանդիսացավ հայագիտության համակարգի նոր, աննախընթաց զարգացմանը:*

*Ցավոք, մենք շատ քիչ բան գիտենք Վիստոն եղբայրների մասին: Հայտնի է, որ նրանց հայրը՝ Գուլիելմուս Վիստոնը XVII դարի*

*վերջերին և XVIII դարի սկզբներին բնակվում էր Հնդկաստանում: Ծառայել է մեծահարուստ Գրիգոր Աղափիրյանի մոտ և եղել նրա զավակների ուսուցիչը Մադրաս քաղաքում: XVIII դարի 10-ական թվականներին վերադարձել է Անգլիա: Գեորգ և Գուլիելմուս որդիներն առաջին անգամ նրանից են իմացել հայերի մասին, նրանից են սովորել հայերեն: Հետագայում եղբայրներն իրենց հայերենը խորացրին և կատարելագործեցին Ղուկաս Նուրիջանյանի հսկողության ներքո և ըստ երևույթին հենց վերջինս էլ հորդորեց նրանց Խորենացու գործը լատիներեն թարգմանելու համար: Թարգմանության առաջին փորձերը կատարեցին դեռևս 1720-ական թվականների վերջերին և թարգմանության առանձին մասեր ուղարկեցին ֆրանսիացի հայագետ Մ. Վ. լա Կրոզին՝ կարծիքի: Վերջինս մեծ հեղինակություն էր, քաջահմուտ հայ գրականության և եղբայրները հույս ունեին խրախույս գտնելու նրա մոտ: Սակայն լա Կրոզը չի ողջունում նրանց այդ որոշումը և հաճությամբ չի վերաբերում «Մովսիսի առասպելաց ի լատին թարգմանութեան»-ը: Միաժամանակ լա Կրոզը կարծիք է հայտնում, թե Հայոց պատմության շարադրողը պետք է ապրած լիներ IX-X դարերում՝ Բագրատունիների օրոք և, որ նա զինվորական է եղել: Չնայած լա Կրոզի բացասական, սուբյեկտիվ հայեցակետին՝ Վիստոնները չարունակում են խորը պատկառանք տածել Հայոց Պատմահոր նկատմամբ և վճռապես չեշտում են, թե նա «Հինգերորդ դարու մեջ ապրած է և չկա պատճառ մը հետագա դարուց մեջ զինք դնելու»: Ամբողջ Պատմության թարգմանությունն ավարտվել է 1735 թ., որը հավաստում է նույն թվի հուլիսի 13-ին լա Կրոզին ուղղված Գեորգ Վիստոնի նամակով, իսկ տպագրությունն իրականացվել է 1736 թ. մայիսին: Թարգմանության ընդարձակ առաջաբանում երկասիրողները բարձր են գնահատել Պատմահոր անձն ու նրա գործը և չեշտել, որ Խորենացին «Բավական հմտություն ունեցող մատենագիր մը է, դյուրահավատ, քան քննադատ...*

*Ով որ կկարծե, թե այս Պատմության գրքեն օգուտ մը քաղելը կարելի չէ, զայնպիսին բոլորովին անգրագետ մեկը կհամարենք, ուստի հույսերնիս մեծ է, թե արդարադատ և հմուտ ընթերցողք մեր այս ձեռնարկը պիտի չարհամարհեն, որ այսպիսի ամենահին լեզվով շարադրված երկասիրություն մը ի խավարե ազատելով ի լույս կընծայենք» (**Գ. Տրումպֆ**, նշվ. աշխ., էջ 71): Այս թարգմանությամբ է, որ Խորենացին դուրս է գալիս ազգային նեղ անձուկ շրջանակներից և մտնում նոր ուղեծիր, ձեռք բերում համամարդկային հնչեղություն,*

*դասվում համաշխարհային քաղաքակրթության արժեքների ու նվաճումների շարքը:*

*ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ. **Գ. Ա. Զրումպֆ**, Ուսումնասիրութիւնք հայ լեզվի և մատենագրության Արևմուտս (ԺԴ-ԺԹ դար), Վենետիկ, 1895, էջ 69-73:*

## ՍԱՐԳԻՍ ՍԱՐԱՖՅԱՆ (ՍԱՐԳԻՍ ԱՐՔԵՊԻՍԿՈՊՈՍ ԿՈՍՏԱՆԴՆՈՒՊՈԼՍԵՑԻ, ԱՂԵՔՍԱՆԴՐՅԱՆ, ԲՅՈՒԶԱՆԴՅԱՆ, ԿԵՍԱՐՅԱՆ՝ 1699-1773)

*Ծնվել է Ադրիանապոլսում 1699 թ. փետրվարին, ակնցի լումայափոխ Աղեքսանդր Սարաֆյանի ընտանիքում: Սկզբնական կրթությունն ստացել է Կ. Պոլսում: Եղել է ոսկերչի աշակերտ, սակայն բուռն սերը գրի և գրքի, Հայոց եկեղեցու նկատմամբ նրան տարել է վանք: Աշակերտել է Կ. Պոլսի Հովհաննես Կոլոտ պատրիարքին (1719-ից): 1726 թվականին ձեռնադրվել է քահանա, մեկ տարի անց՝ վարդապետ: 1734 թ. էջմիածնում օծվել է եպիսկոպոս: Եղել է նշանավոր քարոզիչ Կ. Պոլսում և շրջակայքում, Կեսարիայի (1731-1738) և Գաղատիայի (1738-1741) Հայոց թեմերի առաջնորդ, Երուսաղեմի նվիրակ: 1740-ական թվականների սկզբներին հրաժարվել է Հայ Առաքելական եկեղեցու դավանանքից և ընդունել կաթոլիկություն: 1745 թ. մայիսից որպես կաթոլիկ քարոզիչ գործել է Հռոմում, Վենետիկում, Լիվոռնոյում և Զմյուռնիայում: 1754 թ. դեկտեմբերին դարձյալ հաստատվում է Կ. Պոլսում, ուր և այլուր զբաղվել քարոզչությամբ (մինչև 1772 թիվը): 1747 թվին Վենետիկում հիմնադրել է հայկական տպարան և մինչև 1752 թ. այստեղ տպագրել 15 անուն գիրք՝ «Նոր Կտակարան» (1751), «Պատմութիւն վարուց Յոհաննու Ոսկեբերանի» (1751) և այլն: 1752 թ. մայիսին խոջահայ մեծահարուստ Հովհաննես չելեպի Սեդրոսյանի (Մարքեզե Ջիովաննի դի Սերբոս, 1727-1811) նվիրատվությամբ մի գրքով տպագրել է Մովսես Խորենացու Պատմությունը և Աշխարհագրությունը: Պատմության տպագրությունը կատարվել է Ամստերդամի հրատարակության հիման վրա՝ «Եւ յաղագս չունելոյ մեր աստ գձեռագիր գաղափար, միայն ի Յամստելօդամ տպագրեցելոյն օրինակեցաք» («Առաջաբան»):*

*Սարգիս Սարաֆյանը մահացել է Լիվոռնոյում, 1773 թ. հոկտեմբերի 2-ին:*

*ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ. **Գ. Գալեմքեարյան**, Կենսագրութիւն Սարգիս արքեպիսկոպոսի Սարաֆյան և ժամանակին հայ կաթողիկեայք, Վիեննա, 1908: **Ս. Ճեմճեմյան**, Նոր*

*նյութեր Սարգիս արքեպիսկոպոս Սարաֆյանի մասին, տե՛ս «Բազմավեպ», 1983, № 1-4, էջ 132-173; 1984, № 1-2, էջ 118-141: Գ. **Բամբուքճյան,** Հովհաննես պատրիարք Կոլոտ (1678-1741) և իր աշակերտները, Ստանպոլ, 1984:*

## ՀՈՎՍԵՓ ՀՈՎՀԱՆՆԵՍԻ ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆ (ԻՈՍԻՖ ԻՈԱՆՆԵՍՈՎ, ՑԱԺԴԵՐԽԱՆՑԻ, ծն. թ. անհտ. - 1862)

*Կենսագրական տվյալները խիստ կցկտուր են: Հայտնի է, որ աստրախանցի է, եղել է ավագ սարկավագ, պաշտոնավարել Ս. Պետերբուրգի հայկական Ս. Կատարինե Մայր եկեղեցում: 1811 թ. սեպտեմբերին Հովսեփ Հովհաննիսյանը Պետերբուրգում հիմնադրել է հայկական երկրորդ տպարանը Ռուսաստանում: Այն տեղավորված էր Նևայի պողոտայի վրա գտնվող Լազարյաններին պատկանող շենքերից մեկի երկրորդ հարկում: Տպարանը գործել է մինչև 1827 թվականը: Տպագրել է շուրջ 12 անուն գիրք՝ մեծ մասամբ Բրիտանական Աստվածաշնչական ընկերության գրքերը՝ «Նոր Կտակարան» (1814, 1817), «Աստվածաշունչ» (1817) և այլն: Հովսեփ Հովհաննիսյանի տպագրած «Աստվածաշունչը» համարվում է նշանակալից երևույթ հայ տպագրական կյանքում:*

*Զբաղվել է թարգմանական աշխատանքներով. ռուսերեն է թարգմանել Գևորգ (Եգոր) Մելքիսեդեկյան Խուրովի «1778-1809 թթ. Հայաստանի արժանահիշատակ անցքերի նկարագրությունը» (հայերեն բնագիրն անհայտ է, 1811), Մարգար Խոճենցի (Գեղամյան) «Բարառնական դիմառնութիւն բարոյական» (1812) աշխատությունները, թարգմանել և գրաբար-ռուսերեն համատեղ տեքստով հրատարակել Գրիգոր Նարեկացու «Մաղթանք գիշերայինք»-ը (1810): Ռուսերենից գրաբար է թարգմանել Մոսկվայի մետրոպոլիտ Պլատոնի «Քարոզներ» (1811), «Բան առ Հայկազնեայ քրիստոնեայս, ընկերակցութենէ ռուսաց Աստուածաշունչ ժողովոյն, որ ի Ռուսաստան» (1816) գրքերը: Հովսեփ Հովհաննիսյանի գործունեության պսակը կազմում է Մովսես Խորենացու «Հայոց պատմության» ռուսերեն թարգմանությունը (1809), որը ձոնված է ռուսաց Ալեքսանդր I-ին կայսրին: Հովսեփ Հովհաննիսյանի սույն թարգմանության շնորհիվ է, որ ռուս ընթերցողն ու գիտական հասարակայնությունը, առաջին անգամ լայն ընդգրկմամբ, ծանոթացան Մովսես Խորենացու Պատմության հետ: Ըստ էության, այս թարգմանությունը նոր, լայն հորիզոններ բացեց Ռուսաստանում հայագիտական մտքի զարգացման համար: Մահացել է 1862 թ.՝ Ս. Պետերբուրգում:*

*ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ. Ռ. Հախվերդյան, Իոսիֆ Իովաննեսովի տպարանը Պետերբուրգում, տե՛ս «Հայություն», թերթ, 1993, 17-30 նոյեմբերի, № 15, էջ 6:*

## ԱՐՍԵՆ ԿՈՄԻՏԱՍ ԲԱԳՐԱՏՈՒՆԻ
## (ԱՆԹԻՄՈՍՅԱՆ, ԱՌԱՆ ՍԻՍԱԿՅԱՆ՝ 1790-1866)

*Նշանավոր Հայագետը ծնվել է Կ. Պոլսում 1790 թ. օգոստոսի 21-ին: Նախնական կրթությունը ստացել է տեղի վարժարաններից մեկում: 1801 թ. ընդունվել է Վենետիկի Մխիթարյան դպրոցը, որն ավարտելուց Հետո (1810) նշանակվել է ուսուցիչ Ռափայելյան վարժարանում, ապա՝ տեսուչ Ս. Ղազարի Մխիթարյան դպրոցում: Եղել է միաբանության գործակալության օգնականը Հռոմում: Գրական առաջին փորձերը կատարել է 1812 թ., գրել է կրոնաբարոյախոսական բնույթի բանաստեղծություններ, Հին Հունարենից, լատիներենից, իտալերենից և ֆրանսերենից կատարել թարգմանություններ: Նրա բանաստեղծությունների, պոեմների և թարգմանությունների մեծ մասը լույս են տեսել «Տաղք Մխիթարյան վարդապետաց» ժողովածուի Ա Հատորում (1852): Հեղինակ է կրոնապատմական բովանդակություն ունեցող թատերգությունների՝ «Երուանդ», «Արտաշէս» և այլն: Հայ գրական կյանքի աչքառու երևույթներից է նրա «Հայկ Դիւցազն» ծավալուն էպոպեան (1858), որով դառել է կլասիցիզմի ամենանշանավոր ու չգերազանցված դեմքը Հայ գրականության մեջ:*

*Արսեն Բագրատունու աշխատությամբ են լույս տեսել «Գրիգոր Նարեկայ վանից վանականի մատենագրութիւնք» (1827, 1840), Եղիշեի «Վասն Վարդանայ և Հայոց պատերազմին» (1828, 1852), Ագաթանգեղոսի «Պատմութիւն Հայոց» (1835, 1862), Բարսեղ Կեսարացու «Ճառք վասն վեցօրեայ արարչութեան» (1830), «Գիրք Աստուածաշունչ Հին և Նոր Կտակարանաց» (1860) և այլ երկասիրություններ: Հին Հունարեն բնագրից Հայերեն է թարգմանել Թեոփրաստոսի «Նկարագիրք» (1830), Կալիսթենեսի «Պատմութիւն Աղեքսանդրի Մակեդոնացւոյ» (1842), Հոմերոսի «Իլիական» (1864, 1893), լատիներենից Հայերեն է թարգմանել Կվինտոս Հորացիոս Ֆլակկոսի «Արուեստ քերթողական» (1847), Վիրգիլիոսի «Մշակականք» (1847), անգլերենից՝ Ջոն Միլտոնի «Դրախտ կորուսեալ» (1861) ստեղծագործությունները: Կարևոր պետք է Համարել Հատկապես Արսեն Բագրատունու «Տարերք Հայերէն քերականութեան» աշխատությունը (1846, ունեցել է ևս յոթ այլ Հրատարակություններ): Մովսես Խորենացու «Պատմութիւն Հայոց»-ի բնագրի գիտական Հրատարակության ուղղությամբ նշանակալի են Արսեն Բագ-*

*բառունու ջանքերը: Տեքստաբանական տքնաջան աշխատանքի արդյունք է 1827 թ. Վենետիկում լույս տեսած Մովսես Խորենացու «Պատմութիւն Հայոց»-ը: Ըստ Լության Ա. Բագրատունին կազմել է մի նոր համեմատական բնագիր, որը բազում առավելություններ ուներ Թովմաս Նուրիջանյանի հրատարակությունից: Այդ մասին հետևյալն է նշված «Ազգ»-ում՝ «Դոյզն նշխար աւանդից նախննացս յայս գանձ մատենի ամփոփեալ ի բազմերախտ ալեւոր ծերոյն Խորնոյ, և ի հրոյ և ի հինէ հազիւ զերծեալ, այս չորիր տեսանէ զլոյս գրաւորական, ոչ ի միոյ անստոյգ օրինակէ՝ որպես հինքն, այլ ի չորից. մին ՋՄԲ ամի, մեւսն ՌԺԻ, մեւս եւս ՌԾԼԲ, և այլ անյայտ»:*

*Ա. Բագրատունին մահացել է 1866 թ. դեկտեմբերի 24-ին Ս. Ղազարում:*


***ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ. Ղ. Ալիշան,** Արսեն Բագրատունի, տե՛ս «Բազմավեպ», 1866, էջ 357-367: **Ս. Երեմյան,** Ազգային դեմքեր, գրագետ հայեր, հատ. 1, Վենետիկ, 1920, երկրորդ տպագրություն, էջ 72-210: «Հայ գրականության պատմություն», հատ. 1, ՀԽՍՀ ԳԱ հրատ., Երևան, 1962, էջ 171-193:*


## ՊՈԼ ԷՄԻԼ ԼԸ ՎԱՅՅԱՆ ԴԸ ՖԼՈՐԻՎԱԼ
## (1800-1862)

***Ֆրանսիական** հայագիտական դպրոցի առավել նշանավոր դեմքերից է: Բարձրագույն կրթությունն ստացել է Փարիզի Արևելյան կենդանի լեզուների դպրոցում (1821-1828): Այստեղ աշակերտել է ականավոր լեզվաբան Հակոբ Շահան-Ջրպետյանին, որի հսկողության ներքո էլ սովորել է հայերեն, հին հայկական բնագրերից կատարել թարգմանություններ: 1828 թվականից հայոց լեզու և գրականություն է դասավանդել Արևելյան կենդանի լեզուների դպրոցում, 1830 թվից գլխավորել է նույն դպրոցի հայագիտական ամբիոնը: 1834 թ. մեկնել է Վենետիկ և խորացել հայոց լեզվի ուսումնասիրության մեջ, Մխիթարյանների աջակցությամբ կատարել իր առաջին հայագիտական հետազոտությունները, ձեռնամուխ եղել Մովսես Խորենացու «Հայոց պատմության» ֆրանսերեն թարգմանությանը: Թարգմանությունը լույս տեսավ Փարիզում 1836 թ. և չատ լայն արձագանք չունեցավ, կարելի է ասել այն չընդունվեց գիտական հասարակայնության կողմից: Սույն հապճեպ թարգմանությունն այնքան պակասավոր էր ու թերի, որ թարգմանիչը «բռնադատվեցավ անհետ ընել զայն՝ վերցնելով ի վաճառմանն» (տե՛ս **Գ. Ա. Տրումպֆ,** նշվ. աշխ., էջ 130):*

*1837–1840 թվականներին դը Ֆլորիվալն ամբողջությամբ զբաղված էր Խորենացու Պատմության նոր թարգմանության աշխատանքներով: Սա միանգամայն այլ, ընտրելագույն թարգմանություն էր, որը կատարվել էր քաջահմուտ գրաբարագետ Գաբրիել Այվազովսկու խիստ հսկողության ներքո: Ի վերջո աշխատանքը պսակվում է հաջողված հրատարակությամբ: Խորենացու Պատմության ֆրանսերեն նոր թարգմանությունը լույս տեսավ 1841 թ. երկու գրքով՝ հայերեն բնագրով ու հարուստ ծանոթություններով: Այն վերահրատարակվել է նաև 1845 թվականին: Նշելի է, որ դը Ֆլորիվալն իր թարգմանությունը ձոնել է ռուսաց Նիկոլայ I-ին կայսրին, որն ի նշան շնորհակալության, թարգմանչին նվիրել է ադամանդակուռ մատանի:*

*Դը Ֆլորիվալը շատ բարձր է գնահատել Խորենացուն, համարելով նրան «Բարեկամ և սիրող ճշմարտության», որը «կըրնա երբեմն խաբված ըլլալ, բայց ոչ երբեք խաբող»: Նա ֆրանսերեն է թարգմանել նաև Մարգար Խոճենցի «Բարառնական դիմառնութիւն բարոյական» երկը (1832), Եզնիկ Կողբացու «Եղծ աղանդոցը» (1843) և Մխիթար Գոշի Առակները (չի հրատարակվել):*

***ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ. Գ. Ա. Շրումպֆ,*** *Ուսումնասիրությունք հայ լեզվի և մատենագրության Արևմուտս (ԺԴ–ԺԹ դար), էջ 129–136:*

## ՆԻԿՈԼԼՈ ԹՈՄՄԱԶԵՈ (ՏՈՄԱՇԻՋ, 1802–1874)

*Ծնվել է Դալմատիայի Շեպենիկ քաղաքում, 1802 թ. հոկտեմբերի 9-ին: 1818 թ. ընդունվել է Պադուայի համալսարանի իրավաբանական ֆակուլտետը և ավարտել այն 1823 թվականին: Զբաղվել է գրական աշխատանքներով, աշխատակցել ֆրանսիական, իտալական գիտական պարբերականներին: 1848 թ. նշանակվել է Վենետիկի դեսպան Ֆրանսիայում, կարևոր դեր է խաղացել իտալական ժողովրդի ազգային-ազատագրական պայքարում: Եղել է Վենետիկի պառլամենտի դեպուտատ: Հեղինակ է բազմաթիվ բանաստեղծական ժողովածուների, վեպերի, գրականագիտական-բանասիրական երկասիրությունների, կազմել է բառարաններ, կատարել թարգմանություններ: Հայերեն է սովորել Վենետիկի Մխիթարյանների մոտ, նրա ուսուցիչն է եղել Գաբրիել վարդապետ Այվազովսկին: Վերջինիս խորհրդով ու օգնությամբ իտալերեն է թարգմանել Մովսես Խորենացու Հայոց պատմությունը (1841, վերահրատարակվել է 1850 թվականին), Ագաթանգեղոսի «Պատմութիւն»-ը (1843): Զույգ*

հրատարակությունների էլ օժտել է պատմաքննադատական հմտալից առաջաբաններով: Ագաթանգեղոսի թարգմանության «Ազգ»-ում չեշտել է հայ հին գրականության դերն ու նշանակությունը համաշխարհային գրականության համակարգում: «Իցմ՛ւ Հայաստանի հին յիշատակներու այս իտալական թարգմանութիւնը՝ հաստատէ սիրոյ նոր զօդ և կցորդութիւնը՝ իրարմէ հեռի, այլ հաւատքով և վիճակաւ համանման երկու քոյրերու մէջ» («Բազմավեպ», 1902, էջ 523):

Ն. Թոմմազեոն մահացել է 1874 թ. մայիսի 1-ին, Ֆլորենցիայում:

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ. Գր. Ճեղալ, Նիկոլո Թոմմազեո, տե՛ս «Բազմավեպ», 1902, № 11, էջ 520-523:

## ՋՈՒԶԵՊՊԵ ԿԱՊՊԵԼԵՏԻ (1810-1876)

Ծնվել է Վենետիկում: Սովորել է տեղի հոգևոր վարժարանում, որն ավարտելուց հետո ձեռնադրվել է քահանա: Պաշտոնավարել է նախ Ճենովայի Ս. Բարդուղիմեոս եկեղեցում, ապա Վենետիկում: Դեռևս ուսումնառության տարիներին հետաքրքրվել է հայոց լեզվով և ուսումնասիրել այն Մանվել Ջախջախյանի «Հայ-իտալերեն» բառարան»-ի օգնությամբ: Լատիներեն է թարգմանել և հրատարակել Ներսես Շնորհալու «Թուղթ ընդհանրականը» (1829): Հաջողված թարգմանության ջերմ ընդունելությունից ոգևորված՝ ձեռնամուխ է լինում Շնորհալու մյուս արձակ թղթերի թարգմանությանը, որը պսակվում է Պիոս Թ պապին ձոնված երկհատոր մի շքեղ հրատարակությամբ (1833): Ջ. Կապպելետին հեղինակել է «Հայաստան» եռահատոր իտալերեն աշխատությունը (1841-1842), որն, ըստ ամենայնի, Ղ. Ինճիճյանի «Հնախօսութիւն Հայաստանեայց»-ի համառոտությունն է: Սույն աշխատությունը կարևոր դեր է խաղացել Արևմուտքում, մասնավորապես, Իտալիայում, Հայաստանի և հայ ժողովրդի պատմության մասին ճշգրիտ պատկերացում կազմելու գործում: Հեղինակն, ի դեպ, սույն գրքի առաջին էջի վրա իրեն անվանում է «Մխիթարյան հայկական ճեմարանի անդամ»: Ջ. Կապպելետին հեղինակ է նաև Ս. Ղազարի Մխիթարյան միաբանության պատմությանը նվիրված ծավալուն մենագրության (1877) և բազմաթիվ հայագիտական հոդվածների, որոնք տպագրվել են իտալական բանասիրական բնույթի ամենատարբեր հանդեսներում: Անշուշտ, Կապպելետին առավել նշանավոր է Եղիշեի (1840) և

Մովսես Խորենացու (1841) Պատմությունների իտալերեն թարգմանություններով:

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ. Գ. Ա. Տրումպֆ, Ուսումնասիրություն Հայ լեզվի և մատենագրության Արևմուտս (ԺԴ-ԺԹ դար), էջ 362-365:

## ՄԿՐՏԻՉ ՀՈՎՍԵՓԻ ԷՄԻՆ (ԿԱՐԱՊԵՏՅԱՆ՝ 1815-1890)

Ծնվել է Նոր Ջուղայում 1815 թ. նոյեմբերի 25-ին: Նախնական կրթությունն ստացել է ծննդավայրի հայկական վարժարանում: 1824-1829 թթ. սովորել է Կալկաթայի Հայոց մարդասիրական ճեմարանում: 1829 թ. ընդունվել է Մոսկվայի Լազարյան ճեմարանը, որն ավարտելուց հետո ուսանել է Մոսկվայի համալսարանի բանասիրական բաժնում (1834-1838): Համալսարանն ավարտելուց հետո պաշտոնավարել է Լազարյան ճեմարանում որպես հայերենի ուսուցիչ, ապա տեսուչ, վերատեսուչ, պրոֆեսոր: Եղել է Վլադիմիրի նահանգի դպրոցների վերատեսուչ, Մոսկվայի 5-րդ դասական գիմնազիայի տնօրեն, Լազարյան ճեմարանի հայագիտության ամբիոնի վարիչ:

Ծավալել է հայագիտական բուռն գործունեություն: Նրա աշխատասիրությամբ են լույս տեսել Ղազար Փարպեցու «Թուղթ առ Վահան Մամիկոնեան» (1853), Հովհաննես Դրասխանակերտցու (1853), Մովսես Կաղանկատվացու (1860), Մխիթար Այրիվանեցու (1860), Վարդան Արևելցու (1861), Ստեփանոս Օրբելյանի (1861) բնագրերը: Ռուսերեն է թարգմանել Մովսես Խորենացու «Հայոց պատմութիւնը» (1858, 1893), Վարդան Արևելցու (1861) և Ասողիկի (1864) Պատմությունները, նաև Լամբրոնացու Ատենաբանությունը (1864), Շարականները (1879, 1914), ֆրանսերեն է թարգմանել Փավստոս Բուզանդի Պատմությունը (1867): Հեղինակ է Մովսես Խորենացու Պատմությանը նվիրված մի շարք ուշագրավ հետազոտությունների, որոնցից շատերը պահպանել են իրենց այժմեականությունն ու նշանակությունը՝ «Վեպք հնոյն Հայաստանի» (1850), «Մովսես Խորենացին և Հայոց հին վեպերը» (1881, հայերեն՝ 1886, 1887), «Հայկյանների դինաստիական ցանկը Մովսես Խորենացու Պատմության մեջ» (1884) և այլն:

Մ. Էմինը 10.000 ռուբլի է տրամադրել հայագիտական հետազոտությունները խրախուսելու նպատակով: Նրա կտակած այդ գումարով են լույս տեսել Էմինյան ազգագրական ժողովածուի ինը հատորները:

*Մահացել է 1890 թ. դեկտեմբերի 13-ին, Մոսկվայում:*

***ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ.*** *Ե. Շահազիզ, Մ. Հ. էմին, Թիֆլիս, 1906: Բ. Չրաքյան, Մկրտիչ էմին, տե՛ս «Բազմավեպ», 1901, № 11, էջ 372-377: «Արաքս», ամսագիր, 1890, գիրք Բ, դեկտեմբեր, էջ 23-29: «Հանդես ամսօրյա», 1891, № 2, էջ 51-53: «Լումա», 1906, № 1:*

## ՎԻԿՏՈՐ ԼԱՆԳԼՈՒԱ (1829-1869)

*Ծնվել է 1829 թ. մայիսի 20-ին Ֆրանսիայի Տիեփ քաղաքում: Ուսումնառությունն անցել է Հին Հրովարտակների դպրոցում, այնուհետև սովորել Փարիզի Արևելյան կենդանի լեզուների դպրոցում: Այստեղ հրապուրվել է հայերենով և խորապես ուսումնասիրել այն: 1852-1853 թթ. Նապոլեոն III-ի հանձնարարությամբ գիտական հետազոտություններ է կատարել Կիլիկիայում և Փոքր Հայքում: Մանրամասն ուսումնասիրել է Կիլիկիայի աշխարհագրությունը, հանքային հարստությունները, ժողովրդի կենցաղն ու սովորույթները, պատմությունը: Այս բոլորի արդյունքն ամփոփել է «Ճանապարհորդություն Կիլիկիայում և Տավրոսի լեռներում կատարված 1852-1853 թվականներին» (1861) աշխատությունում: Հայագիտական առաջին երկասիրությունները վերաբերում են Ռուբինյան դրամների դասակարգմանը: 1861 թ. աշխատել է Ճենովայի, Վենետիկի և Թուրինի դիվաններում, հայտնաբերել արժեքավոր շատ վավերագրեր՝ նվիրված հայ-ֆրանսիական պատմական կապերին: Նրա աշխատասիրությամբ են լույս տեսել «Կոռիկոսի տիրոջ՝ Հեթումի ժամանակագրությունը» (1863), «Տեղեկագիրք Վենետիկի Սուրբ Ղազար կղզու հայկական վանքի և Մխիթարյան միաբանության մասին» (1863, լեհերեն՝ 1876, անգլերեն՝ 1899): Հայերենից ֆրանսերեն է թարգմանել Միքայել Ասորու ժամանակագրությունը (1868): Ի պաշտպանություն Զեյթունի հայերի գրել «Թուրքիայի հայերը և Զեյթունի ապստամբությունը» հոդվածը (1863): Նուպար փաշայի դրամական առատաձեռն նվիրատվությամբ և Վենետիկի Մխիթարյանների գործուն գիտական աջակցությամբ ծրագրել էր հինգ մեծադիր հատորներով հրատարակել Հայոց հին և նոր պատմիչների երկերի ֆրանսերեն թարգմանությունները: Առաջին հատորը (1867, 1881, 2001) ամփոփում է Մար Աբասի, Բարդածանի, Ագաթանգեղոսի, Փավստոսի Ղերուբնա Եդեսացու, Զենոբ Գլակի, Հովհան Մամիկոնյանի, Սուտ Կալիսթենեսի երկերի ֆրանսերեն թարգմանությունները, իսկ երկրորդ հատորը (1869, 2001)*

բովանդակում է V դարի պատմիչների երկերը՝ Կորյուն, Եղիշե, Եզնիկ, Մովսես Խորենացի, Ղազար Փարպեցի: Ցավոք, այս վիթխարի գործը իրականացվեց միայն մասամբ: Այն ընդհատվեց Վ. Լանգլուայի վերահաս ու անժամանակ մահվամբ: Նա Պատմահորը նվիրված մի շարք կարևոր հոդվածների և մենագրության հեղինակ է՝ «Մովսես Խորենացին և նրա պատմությունը» (1858, հայերեն՝ 1863) և այլն: Վ. Լանգլուան եղել է Վենետիկի Մխիթարյան միաբանության «Ակադեմիայի» և Լազարյան ճեմարանի անդամ:

Վ. Լանգլուան մահացել է 1869 թ. մայիսի 14-ին Փարիզում:

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ.«Բազմավեպ», 1869, էջ 247-249: **Ա. Ա.,** «Հայկական աշխարհ», 1869, № 10-12, էջ 346-349: **Գ. Ա. Տրունյփ**, նշվ. աշխ., էջ 219-228: **Ա. Ղազիկյան,** նշվ. աշխ., էջ 966-1002: **Հ. Մ. Պողոսյան,** Զեյթունի պատմությունը (1409-1921 թթ.), Երևան, 1969, էջ 6-11:

## ՄԱՔՍԻՄԻԼԻԱՆ ԹԵՈԴՈՐ ԱԼԲԵՐՏ ԼԱՈՒԵՐ (1841-1923)

Ծնվել է 1841 թ. հունվարի 11-ին Շհիլլինգենում (Գերմանիա): Սովորել է Գոտինգենի համալսարանում, ստացել արևելագիտական ու աստվածաբանական հիմնարար կրթություն: Դասավանդել է Գոտինգենի և Քյոլնի համալսարաններում, եղել Պրուսական թագավորական գպրոցական ընկերության խորհրդական:

Ուսումնառության տարիներին հրապուրվել է հայերենով և հմտացել գրաբարի ուսումնասիրության բնագավառում: Զբաղվել է նաև հայագիտությամբ, որտեղ ներդրել է ծանրակշիռ ավանդ:

Դեռևս 28 տարեկան հասակում՝ 1869 թվականին, Վիեննայում հրատարակել է «Դասական հայերենի քերականություն» դասագիրքը (98 էջ): Նույն թվականին Ռեգենսբուրգում լույս է տեսել Մովսես Խորենացու «Հայոց պատմություն» (240 էջ), իսկ մի քանի տարի անց՝ 1879 թ., Քյոլնում Փավստոս Բուզանդի «Հայոց պատմության» (218 էջ) նրա թարգմանությունները: Մովսես Խորենացու «Հայոց պատմության» Բ գիրքն ամբողջությամբ զետեղել է 1881 թ. Վիեննայում հրատարակած իր «Հայկական քրեստոմատիա» ձեռնարկում (էջ 1-93), որից հետո տվել է հայոց լեզվի քերականության սկզբունքներն ու իր ծանոթագրությունները (էջ 94-179): Ֆրանսիացի նշանավոր հայագետ Ավգուստ Կարիերը ֆրանսերեն է թարգմանել Լաուերի «Դասական հայերենի քերականություն» դասագիրքը (Փարիզ, 1883): Հեղինակն անձամբ հետևել է թարգ-

*մանությանը և սրբագրել ամբողջ գործը:*

***Մաքսիմիլիան Լաուերի կենսագրական տվյալները տրամադրել է բեռլինահայ հայտնի մտավորական Աշոտ Մանուչարյանը, որին հայտնում ենք մեր շնորհակալությունը:***

## ԽՈՐԵՆ ՍՏԵՓԱՆԵ (ՍՏԵՓԱՆՈՍ ՍՏԵՓԱՆՅԱՆ, ՍՏԵՓԱՆՈՍ ՍՏԵՓԱՆԵ, ԲԱԳՐԱՏՈՒՆԻ ԻՇԽԱՆ՝ 1840–1900)

*Ծնվել է 1840 թ. Թիֆլիսում: Սովորել է ծննդավայրի Ներսիսյան դպրոցում և Լազարյան ճեմարանում: 1858 թ. ընդունվել և 1862 թ. ավարտել է Մոսկվայի համալսարանի իրավաբանական ֆակուլտետը: 1862–1868 թթ. ուսուցչությամբ է զբաղվել Թիֆլիսի առաջին դասական գիմնազիայում և այլ դպրոցներում: Հիմնադրել է մի քանի դպրոցներ: Աշխատակցել է ժամանակի նշանավոր հայկական պարբերականների («Հյուսիսափայլ» և այլն), տպագրել բանաստեղծություններ, կատարել թարգմանություններ: Հրատարակել և խմբագրել է «Հայկական աշխարհ» (1864–1879) և «Մանկավարժնոց» (1884–1887) հանդեսները: 1871 թ. ձեռնադրվել է կուսակրոն քահանա և նշանակվել Երևանի թեմական ծխական դպրոցների տեսուչ, այնուհետև տեսչություն է արել Շուշիում, Թիֆլիսում, Բաքվում: 1874 թվականից դասավանդել է Գևորգյան ճեմարանում և միաժամանակ խմբագրել «Արարատ» հանդեսը (1878 թվականից):*

*1876 թվականից վարդապետ, 1894 թ. եպիսկոպոս: 1882 թ. նշանակվել է Ախալցխայի առաջնորդական փոխանորդ, 1887 թ.՝ Ս. Պետերբուրգի և Մոսկվայի հայոց հոգևոր հովիվ, իսկ այնուհետև Ղրիմի Ս. Խաչ վանքի վանահայր, 1895 թ. Աստրախանի թեմի առաջնորդական փոխանորդ և դարձյալ Ղրիմի Ս. Խաչ վանքի վանահայր (1896 թվականից):*

***Խորեն Ստեփանեն Մովսես Խորենացու «Հայոց պատմության» թարգմանությանը ձեռնամուխ է եղել դեռևս 1860-ական թվականներին և որոշ հատվածներ տպագրել «Հայկական աշխարհ» ամսագրում: Այն ամբողջությամբ տպագրվեց Հովհաննես Հովնանյանի առատաձեռն նվիրատվությամբ՝ 1889 թվականին: Թարգմանիչը «Առաջաբանում» խոստովանում է «այն դառն ճշմարտությունը, որը չափազանց ցավալի իրողություն է, որ մինչդեռ հայկական ազգի պատմության հայրը, ամբողջ ուսումնական աշխարհից արժանապես գնահատվելով, ուսումնասիրվեցավ և թարգմանվեցավ լատիներեն, ֆրանսերեն, ռուսերեն, իտալերեն, գերմաներեն, հայերն անփույթ***

և անհոգ մնացին մինչև այժմ իրանց ազգային թանկագին ժառանգությունը ճանաչելու և գնահատելու»: Սույն թարգմանությունը լայն տարածում գտավ և թարգմանչին բերեց արժանի գնահատական:
Խորեն Ստեփանեն մահացել է Թիֆլիսում, 1900 թ. նոյեմբերի 13-ին:

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ. «Արարատ», ամսագիր, 1900, № 12, էջ 586: «Արարատ», 1901, № 1, էջ 27-28: «Բազմավեպ», 1901, № 1, էջ 34: Մ. Գասպարյան, Խորեն եպիսկոպոս Ստեփանեի մանկավարժական գործունեությունը, տե՛ս «Էջմիածին», ամսագիր, 1960, № 5, էջ 23-29: Մ. Մխիթարյան, Խորեն Ստեփանեի «Հայկական աշխարհ» ամսագիրը, Երևան, 2002: Ղևոնդ քահանա Մայիլյան, Խորեն եպ. Ստեփանե, տե՛ս «Նշանավոր ճեմարանականներ», հատ. 2, Ս. Էջմիածին, 2009, էջ 395-404:

## ԿՐԻՍՏՈՖ ՍՈՆԳՈՍ (ՔՐԻՍՏՈՖ ՍՈՆԳՈՏՅԱՆ, ԽԱՉԻԿ ԱՍՏՎԱԾԱՏՐՅԱՆ՝ 1843–1907)

Ծնվել է Հունգարիայի Մարոշ-Բոգատ բնակավայրում: Սովորել է Բուդապեշտի համալսարանում: Ուսանողական տարիներից հետաքրքրվել է հայագիտությամբ, թղթակցել ժամանակի հայկական պարբերականներին, հոդվածներ տպագրել հունգարահայերի անցյալի և ներկա իրավիճակի մասին: Եղել է Գեռլա քաղաքի հայկական դպրոցի, ապա գիմնազիայի ուսուցիչ, այնուհետև վերատեսուչ (1863-1903): Հիմնադրել ու խմբագրել է հունգարահայ «Արմենիա» ամսագիրը (1887-1907), որը հսկայական դեր է խաղացել Հունգարիայում հայոց պատմության և մշակույթի պրոպագանդման ու տարածման գործում: Կ. Սոնգոտյանը գործուն մասնակցություն է ունեցել Բուդապեշտի «Հայկական թանգարանային ընկերության» ստեղծմանը, եղել նրա նախագահը (1905-1907):

Հեղինակ է հունգարահայ գաղթավայրերին նվիրված բազմաթիվ ծանրակշիռ ուսումնասիրությունների, որոնցից շատերն այսօր էլ պահել են իրենց նշանակությունը: Դրանցից նշելի են երկհատոր «Սամոշույվար (Գեռլա) հայաքաղաքի պատմությունը» (1901-1903), «Հունգարահայ գերդաստանների տոհմանունները» (1898), «Հունգարահայ ազգագրություն» (1903) և այլ մենագրություններ: Հայերեն է թարգմանել հունգարացի գրողների, հատկապես Շանդոր Պետեֆիի ստեղծագործությունները:

1880-ական թվականների վերջերին սկսում է Մովսես Խորենացու «Հայոց պատմության» թարգմանության աշխատանքները, որի ընթացքի վերաբերյալ մեկ-երկու թղթակցություն է տպագրում

*«Արմենիայում»: Թարգմանությունն ավարտվում է 1891 թ. սկզբներին և անմիջապես սկսվում տպագրությունը, որն ավարտվում է 1892 թվականին: Կ. Սոնգոտյանի սույն թարգմանությունն ունեցել է գրական մեծ արձագանք, որի վկայությունն են տպագրված բազմաթիվ գրախոսականները ժամանակի հունգարական մամուլում:*

*Կ. Սոնգոտյանը մահացել է 1907 թ. հունվարի 24-ին, Գեղլայում:*

*ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ. Ա. Փիփաս, Խաչիկ Սոնկոդյան, տե՛ս «Հանդես ամսօրյա», 1907, № 3, էջ 65-75:*

## ՄԱՆՈՒԿ ԽԱՉԱՏՈՒՐԻ ԱԲԵՂՅԱՆ (1865-1944)

*Ծնվել է Նախիջևանի Աստապատ գյուղում 1865 թ. մարտի 17-ին, երկրագործի ընտանիքում: 1882 թ. ավարտել է Գևորգյան ճեմարանի դպրոցական, իսկ 1885 թ.՝ լսարանական բաժինները: Ուսուցչությամբ է զբաղվել Գևորգյան ճեմարանում (1885-1887), Շուշվա թեմական (1887-1889) և Թիֆլիսի Հովնանյան օրիորդաց (1889-1893) դպրոցներում: Բարձրագույն կրթություն ստանալու նպատակով գնացել է Եվրոպա, ուր ուսանել է Ենայի, Լայպցիգի, Բեռլինի և Սորբոնի համալսարաններում (1893-1897): Ենայի համալսարանում ստացել է փիլիսոփայության դոկտորի աստիճան (1898): Վերադառնալով Հայրենիք՝ հայոց գրականություն է դասավանդել Գևորգյան ճեմարանում (1898-1914), Թիֆլիսի Հովնանյան և Ներսիսյան դպրոցներում (1914-1919): Հայաստանի համալսարանի հիմնադիր դասախոսներից է: Եղել է Երևանի պետական համալսարանի պատմագրական ֆակուլտետի դեկան (1923-1925), Գիտության և արվեստի ինստիտուտի նախագահ (1925-1930): Ընտրվել է ՀԽՍՀ ԳԱ հիմնադիր կազմի անդամ (1943):*

*Ստ. Մալխասյանցի, Ստ. Կանայանցի և այլոց հետ 1903 թ. հիմնադրել է «Պատմագիրք Հայոց» մատենաշարը: Հրատարակել է (Ս. Հարությունյանի հետ) Մովսես Խորենացու «Պատմութիւն Հայոց»-ի (Թիֆլիս, 1913 վերահրատարակվել է Դելմար՝ 1981, Երևան, 1981, 1991), Կորյունի «Վարք Մաշտոցի» (1941, վերահրատարակվել է՝ 1954, 1962, 1981, 2005) բաղդատական բնագրերը, Կ. Մելիք-Օհանջանյանի հետ՝ «Սասնա ծռեր» ժողովրդական վեպի տարբերակները (հատ. 1-2, 1936-1951):*

*Մ. Աբեղյանը հեղինակ է շուրջ 250 անուն մեծարժեք ուսումնասիրությունների, որոնք նվիրված են հայագիտության ամենա-*

տարբեր խնդիրների: Նրա աշխատությունններն ամփոփված են երկեբի ութհատորյակում (1966-1985):

Մ. Աբեղյանի գիտական ժառանգության մեջ իրենց ուրույն տեղն ունեն հատկապես Մովսես Խորենացուն նվիրված ուսումնասիրությունները: Նշանակալից են «Հայ ժողովրդական առասպելները Մովսես Խորենացու պատմության մեջ. Քննադատություն և ուսվածք» (Վաղարշապատ, 1899, 602 էջ), «Հայ վիպական բանահյուսություն» («Երկեր», հ. Ա, Երևան, 1966, էջ 15-180), «Մովսես Խորենացի» («Երկեր», հ. Գ, Երևան, 1968, էջ 276-321) և այլն:

Մ. Աբեղյանը վախճանվել է 1944 թ. սեպտեմբերի 25-ին, Երևանում:

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ. «Մանուկ Խաչատուրի Աբեղյան» (կենսամատենագիտություն), Երևան, 1963: **Կ. Մելիք-Օհանջանյան,** Մանուկ Աբեղյան, տե՛ս «Պատմա-բանասիրական հանդես», 1965, № 3, էջ 3-18: **Ս. Հարությունյան,** Մանուկ Աբեղյան. կյանքն ու գործը, Երևան, 1970:

## ՍԵԹ ԳՐԻԳՈՐԻ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ (1862-1936)

Ծնվել է 1862 թ. սեպտեմբերի 1-ին Նոր Նախիջևանի Նխվիթա գյուղում: Սովորել է ծննդավայրի վարժարանում, ապա Գևորգյան ճեմարանում, ուր աշակերտել է Կարապետ Կոստանյանցին: Ճեմարանն ավարտելուց հետո նշանակվել է Իգդիրի ծխական դպրոցի ավագ ուսուցիչ: 1890-ական թվականների կեսերին Գևորգյան ճեմարանի վարչության կողմից հրավիրվել է որպես գրաբարի ուսուցիչ, որտեղ և աշխատել է մինչև հաստատության փակվելը (1917 թ.): Հետագայում հայոց լեզու և գրականություն է դասավանդել Վաղարշապատի դպրոցներում: «Ասուպ», «Ս. Ց.» ծածկանուններով աշխատակցել է ժամանակի պարբերականներին, հատկապես «Արարատ» ամսագրին (1896-1907), «Գիսավոր» կեղծանունով երգիծական մանրապատումներ և ֆելիետոններ է տպագրել «Նոր Դար»-ում: Հեղինակ է «Եղիշեի և Մակաբայեցվոց գրքերի հարաբերության խնդիրը» (1896), «Մարգարեից գրքերի հետքերը Եղիշեի պատմության մեջ» (1897) բանասիրական ուսումնասիրությունների և դաստիարակության ու մանկավարժական խնդիրներին նվիրված մի շարք հոդվածների, որոնք լույս են տեսել «Արարատ» հանդեսում:

Ստ. Մալխասյանցի, Մ. Աբեղյանի և այլ նշանավոր հայագետների հետ մասնակցել է «Պատմագիրք Հայոց» մատենաշարի գիտական հրատարակության ստեղծմանը: Մ. Աբեղյանի հետ կազմել է Խո-

*րնացու Պատմության համեմատական բնագիրը: Աշխատանքներն սկսվել են 1901 թվականին և ավարտվել 1908 թվականին: Գիրքը տպագրվել է 1911–1913 թթ. ընթացքում: Ինչպես կատարված աշխատանքը, այնպես էլ ժամանակակիցները վկայում են, որ Ս. Հարությունյանը եղել է հմուտ գրաբարագետ և բնագրագետ:*

*Ս. Հարությունյանը մահացել է 1936 թ. մարտի 21-ին, Վաղարշապատում:*

## ՍՏԵՓԱՆՈՍ ՍԱՐԳՍԻ ՄԱԼԽԱՍՅԱՆՑ (1857–1947)

*Ծնվել է հոկտեմբերի 25-ին, Ախալցխա քաղաքում: Սկզբնական կրթությունն ստացել է ծննդավայրի Կարապետյան ծխական և ռուսական գավառական դպրոցներում: Սովորել է նաև էջմիածնի Գևորգյան ճեմարանում (1874–1878): Բարձրագույն կրթությունն ստացել է Ս. Պետերբուրգի համալսարանի արևելյան լեզուների ֆակուլտետում (1881–1889): Համալսարանն ավարտելուց հետո զբաղվել է մանկավարժական գործունեությամբ: Հայոց լեզու և հայ հին գրականություն է դասավանդել ծննդավայրի Կարապետյան և Եղիազարյան, Թիֆլիսի Ներսիսյան, Հովնանյան և Գայանյան օրիորդաց դպրոցներում: Եղել է Ներսիսյան դպրոցի և Գևորգյան ճեմարանի տեսուչ, Հայաստանի համալսարանի հիմնադիր դասախոսներից: 1921 թ. ընդհատել է մանկավարժական գործունեությունը և իրեն նվիրել միմիայն գիտական աշխատանքների: 1943 թ. ընտրվել է Հանրապետության Գիտությունների ակադեմիայի հիմնադիր կազմում:*

*Ստ. Մալխասյանցը հայագիտական մեծ վաստակ և անուրանալի հեղինակություն ունեցող գիտնական էր: Նրա աշխատասիրությամբ են լույս տեսել «Բոնի միութիւն Հայոց Լեհաստանի ընդ եկեղեցւոյն Հռովմայ» ժողովածուն (1884), Ստեփանոս Ասողիկի (1885), Ղևոնդ Վարդապետի (1887), Ղազար Փարպեցու (1904, վերահրատարակվել է 1982), Սեբեոսի (1939՝ հայերեն և ռուսերեն), Ամիրդովլաթ Ամասիացու (1940) բնագրերը: Նախաձեռնել և 1903 թ. հիմնադրել է «Պատմագիրք Հայոց» մատենաշարը: Խմբագրել է սույն մատենաշարով լույս տեսած բոլոր հատորները: Թարգմանել և ընդարձակ ուսումնասիրությամբ ու ծանոթագրություններով լույս է ընծայել Մովսես Խորենացու [1940, վերահրատարակվել է՝ 1953, 1961, 1968, 1981 (երկու անգամ), 1990, 1997] և Փավստոս Բուզանդի (1947, վերահրատարակվել է՝ 1954, 1968, 1987) «Հայոց պատմությունները»: Ռուսերեն է թարգմանել Սիմոն Երևանցու «Ջամբռ» աշխա-*

*տուԹյունը (1958): Հեղինակ է «Հայերեն բացատրական բառարան» (Հատ. 1-4, 1944-1945, երկրորդ տպագրություն՝ Բեյրութ, 1955-1956, երրորդը՝ Երևան, 2010) կոթողային երկասիրության:*

*Խորենացիագիտության բնագավառում, անկասկած, Ստ. Մալխասյանցն անմրցելի է: Շուրջ 50 մեծ ու փոքր ուսումնասիրություններ է նա նվիրել Պատմահոր խնդրին: Դրանց մեջ կան և՛ ծանրակշիռ ուսումնասիրություններ և՛ փոքրածավալ, սակայն խիստ դիպուկ դիտողություններ: Նշելի են հատկապես «Սեբեոսի պատմությունը և Մ. Խորենացի» (1899), «Մովսես Խորենացի» (**Մովսես Խորենացի,** Հայոց պատմություն, Երևան, 1940, էջ VII-XCIV), «Խորենացու առեղծվածի շուրջ» (Երևան, 1940) և այլ ուսումնասիրություններ:*

*Ստ. Մալխասյանցը վախճանվել է 1947 թ. հուլիսի 21-ին, Երևանում:*

***ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ. Ն. Ակինյան,** Ստեփանոս Մալխասյանց, տե՛ս «Հանդես ամսօրյա», 1947, № 11-12, էջ 644-648: «Ստեփան Սարգսի Մալխասյանց» (կենսամատենագիտություն), Երևան, 1962:*

## ՌՈԲԵՐՏ ՎԻԼՅԱՄ ԹՈՄՍՈՆ

*Ծնվել է 1934 թ. մարտի 24-ին Անգլիայի Չիմ քաղաքում: Սովորել է Քեմբրիջի համալսարանում (1952-1957): Համալսարանն ավարտելուց հետո փոխադրվել է Վիեննա, ուր Մխիթարյանների դպրոցում հետևել է հայագիտական դասընթացների: Հմտացել է հայերենի իմացության մեջ և կատարել թարգմանություններ: Ուսումնասիրել է հին հայկական թարգմանական հուշարձանները, հատկապես Աթանասիոս Աղեքսանդրացու հայերեն և ասորերեն թարգմանությունները և հատուկ հետազոտություն նվիրել դրան (1962): Լուվենի համալսարանում նրան շնորհվել է Արևելքի պատմության ու բանասիրության դոկտորի աստիճան: Անմիջապես հրավիրվել է Հարվարդի (ԱՄՆ) համալսարանի վարչության կողմից որպես գրաբարի դասախոս (1963 թվականից): 1969 թվականից նա պրոֆեսոր է, 1973 թվականից առ 1992-ը Հարվարդի համալսարանի Մերձավոր արևելյան լեզուների և քաղաքակրթությունների ամբիոնի վարիչ, 1992 թվականից Օքսֆորդի համալսարանի Փեմբրոկ քոլեջի Գալուստ Գյուլբենկյանի անվան ամբիոնի պրոֆեսոր:*

*Ռ. Թոմսոնը հեղինակ է V դարի հայոց դպրության, մասնավորապես Ագաթանգեղոսին նվիրված մեկ տասնյակից ավելի մենա-*

*գրությունների: Մի քանի անգամ եղել է Երևանում, ուսումնասիրություններ կատարել Մատենադարանում, հանդես եկել հայագիտական նստաշրջաններում, աշխատակցել «Պատմա-բանասիրական հանդեսին»: Նրա աշխատասիրությամբ են լույս տեսել Ագաթանգեղոսի (1976), Մովսես Խորենացու (1978), Եղիշեի (1982), Դավիթ Անհաղթի (Բ. Քենդալի հետ համատեղ, 1983) և այլ մատենագիրների երկասիրությունների անգլերեն թարգմանությունները:*

*Մովսես Խորենացու Պատմության անգլերեն թարգմանության Առաջաբանում Ռ. Թոմսոնը վերարծարծել է Պատմահոր ժամանակաշրջանի վերաբերյալ վաղուց մերժված տեսակետներ, որոնք խորենացիագետների կողմից արժանացան լուրջ քննադատության:*

## ԳԵՎՈՐԳ ՄԿՐՏՉԻ ՆԱԼԲԱՆԴՅԱՆ
## (1926-1998)

*Ծնվել է 1926 թ. հունվարի 5-ին Զիտա քաղաքում: 1932 թվին նրանց ընտանիքը տեղափոխվել է Մոսկվա, ապա՝ Թեհրան: Ավարտել է Թեհրանի Ֆիրուզբահրամ միջնակարգ դպրոցը: 1946 թ. հայրենադարձվել է Խորհրդային Հայաստան: Սովորել է Երևանի պետական համալսարանի բանասիրության ֆակուլտետի արևելյան լեզուների և գրականության (իրանական) բաժնում (1946-1951): 1952 թ. դասավանդել է Երևանի պետական համալսարանի արևելագիտության ֆակուլտետում: Եղել է արևելյան բանասիրության ամբիոնի (1962-1973), ապա՝ իրանագիտության ամբիոնի վարիչ (1973-1997), արևելագիտության ֆակուլտետի դեկան (1968-1973): 1955 թվականին պաշտպանել է թեկնածուական, իսկ 1972 թվականին՝ դոկտորական ատենախոսություն: 1973 թ. նրան շնորհվել է պրոֆեսորի կոչում:*

*Գ. Նալբանդյանը հեղինակ է պարսկերեն լեզվին նվիրված մի շարք ուսումնասիրությունների, ձեռնարկների, բառարանների՝ «Հին պարսկերեն» (1960), «Միջին պարսկերեն (պահլավերեն)» (1962), «Իրանական լեզուներ և բարբառներ» (1962), «Պարսկերեն լեզվի քերականություն» (1980), «Պարսկերեն-հայերեն բառարան» (Երևան, 1987, Թեհրան, 1995) և այլն:*

*Գ. Նալբանդյանը ձեռնարկել է հայ պատմիչների երկերի պարսկերեն թարգմանության գործը: Նրա աշխատասիրությամբ են լույս տեսել Մովսես Խորենացու «Հայոց պատմություն»-ը (1984) և Եզնիկ Կողբացու «Եղծ աղանդոց»-ը (1989): Երկու թարգմանություններն էլ օժտված են առաջաբանով և հարուստ ծանոթագրություններով:*

Գ. Նազրանդյանը վախճանվել է 1998 թ. նոյեմբերի 5-ին Երևանում:

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ. Կենսագրական հանրագիտարան. Երևանի պետական համալսարան, Երևան, 2009, էջ 449:

## ԱԼԵՔՍԱՆԴՐ ԱԲԴԱԼԱՁԵ

Ծնվել է 1945 թվականի հունվարի 1-ին Վրաստանի Քութայիսիի շրջանի Սաղուլիա գյուղում: 1970 թ. ավարտել է Թբիլիսիի պետական համալսարանի պատմության ֆակուլտետը: Նույն թվականից առ այսօր աշխատում է Վրացական ԽՍՀ ԳԱ Ի. Ջավախիշվիլու անվան պատմության, հնագիտության և ազգագրության ինստիտուտի Անդրկովկասի ժողովուրդների հետ Վրաստանի փոխհարաբերությունների պատմության բաժնում, նախ, որպես ավագ, ապա՝ առաջատար գիտական աշխատող: 1983 թ. պաշտպանել է «Վրաստանի և Հայաստանի քաղաքական փոխհարաբերությունները IX դարի կեսերից մինչև XI դարի 60-ական թվականները» խորագիրը կրող դոկտորական ատենախոսությունը և ստացել պատմական գիտությունների դոկտորի գիտական աստիճան:

Ա. Աբդալաձեն հեղինակ է հայագիտական մի շարք մենագրությունների՝ «XIV-XV դարերի հայոց հիշատակարանների տեղեկությունները Վրաստանի մասին» (1978), «Հայ-վրացական հարաբերությունները հնագույն ժամանակներից մինչև XII դարը» (1982), «Քաղաքական կոնֆիգուրացիայի հարաբերությունները Անդրկովկասում IX-XI դարերում» (1988), «Վրաստանը և Հայաստանը» (2008), «Հայերի պրոբլեմը Վրաստանի համար» (2011) և այլն:

Նրա թարգմանությամբ է լույս տեսել «Հայկական ձեռագրերի հիշատակարանների տեղեկությունները Վրաստանի մասին IX-XIV դարերում» նշանակալից ժողովածուն (1978), որն օժտված է թարգմանչի ընդարձակ առաջաբանով և հարուստ ծանոթագրություններով: 1984-ին վրացերեն է թարգմանել Մովսես Խորենացու «Հայոց պատմությունը»:

## ԱՐԹԻԱՐ ԳԱՐԱՄԱՆԼՅԱՆ
## (ՎԱԶԳԵՆ ԷԹԻԵՄԵԶՅԱՆ, 1943-1996)

Ա. Գարամանլյանը (իսկական ազգանունը էթիեմեզյան), սփյուռքահայ հայտնի արձակագիր է, հրապարակախոս, խմբագիր, հրա-

*տարակիչ, կրթական ու հանրային գործիչ: Ծնվել է 1943 թ. մարտի 29-ին Հալեպից ոչ հեռու գտնվող հայաբնակ Նոր Գյուղ ավանում: Սովորել է ծննդավայրի ծխական դպրոցում և Հալեպի Ազգային Սահակյան վարժարանում: Այնուհետև ուսումնառությունը շարունակել է Հալեպի Մխիթարյան վարժարանում, ուր աշակերտել է Վահան Հովհաննիսյանին և Եփրեմ Ղազարյանին: Ավարտել է Ազգային Քարեն Եփփե ճեմարանը: Բարձրագույն կրթությունն ստացել է Բեյրութի Ամերիկյան համալսարանի ճարտարագիտության (1963-1965) և Տորոնտոյի (Կանադա) համալսարանի գրականագիտության (1968-1975) բաժիններում:*

*1975 թվականին վերադարձել է Բեյրութ և իրեն ամբողջությամբ նվիրել ազգային-հասարակական ու կուսակցական գործունեության: Զբաղվել է ուսուցչությամբ, դասավանդել Բեյրութի ուսումնական տարբեր հաստատություններում, աշխատակցել պարբերական մամուլին՝ «Սփյուռք», «Ահեկան», «Դրոշակ», «Բագին», խմբագրել «Ազդակ» օրաթերթը և այլն: Սփյուռքահայ մամուլի էջերում Վ. էթիեմեզյան, Ն. Դիմաքսյան, Վ. Է. Վարազդատ և այլ ծածկանուններով տպագրել է պատմվածքներ, ակնարկներ, հրապարակախոսական, գրականագիտական, իմաստասիրական, գեղագիտական բազմաթիվ հոդվածներ: Հիմնադրել է «Մորմոք» հրատարակչությունը և զբաղվել թարգմանական աշխատանքներով: Արևմտահայերեն է փոխադրել և «Հայհոգի» մատենաշարով հրատարակել Ագաթանգեղոսի «Հայոց պատմություն» (Բեյրութ, 1995), Եղիշեի «Վարդանի և Հայոց պատերազմի մասին» (Բեյրութ, 1995), Մովսես Խորենացու «Հայոց պատմություն» (Բեյրութ, 1995), Կորյունի «Վարք Մաշտոցի» (Բեյրութ, 1996) և Ս. Խանզադյանի «Թագուհին Հայոց» (Բեյրութ, 1999) երկասիրությունները:*

*Մահացել է 1996 թ. սեպտեմբերի 17-ին, Բեյրութում:*

*ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ. «Հարգանքի հանդիսություն նվիրված՝ վաստակավոր մտավորական Վազգեն էթիեմեզյանին», Բեյրութ, 1996:*

## ԲԱԳՐԱՏ ԱՐՇԱԿԻ ՈՒԼՈՒԲԱԲՅԱՆ
**(1925-2001)**

*Նշանավոր գրող, հրապարակախոս, պատմաբան Բ. Ա. Ուլուբաբյանը ծնվել է 1925 թ. դեկտեմբերի 9-ին Լեռնային Ղարաբաղի Մարտունու շրջանի Մուշկապատ գյուղում: Միջնակարգ կրթությունն*

*ստացել է ծննդավայրում, այնուհետև ավարտել է Շուշիի ուսուցչական ինստիտուտ (1944) ու Բաքվի մանկավարժական ինստիտուտի հայոց լեզվի և գրականության բաժինը (1946): Եղել է «Սովետական Ղարաբաղ» թերթի խմբագիր, ԼՂԻՄ գրողների միության նախագահ (1949-1967), զբաղեցրել կուսակցական և խորհրդային բարձրագույն պաշտոններ: 1967 թվականից տեղափոխվել է Հայաստան, եղել ԳԱԱ պատմության ինստիտուտի ավագ գիտաշխատող, Գրողների միության անդամ: Լույս է ընծայել «Մարդը» (1963), «Սարդարապատ» (1991) և այլ վեպեր ու ժողովածուներ:*

*Բ. Ուլուբաբյանի պատմագիտական աշխատանքները գլխավորապես վերաբերում են «Հայոց Արևելից կողմանց» խնդիրներին, ինչպես օրինակ՝ «Խաչենի իշխանությունը X-XVI դարերում» (1975), «Դրվագներ Հայոց Արևելից կողմանց պատմության. 5-7-րդ դարեր» (1981), «Արցախի պատմությունը. սկզբից մինչև մեր օրերը» (1994), «Արցախյան գոյապայքարի տարեգրություն» (1997), «Հայոց Արևելից կողմանց եկեղեցին և մշակույթը» (1998) և այլն: Նրա աշխարհաբար թարգմանությամբ են լույս տեսել Ղազար Փարպեցու «Հայոց պատմություն» (1982), Եսայի Հասան-Ջալալյանի «Համառոտ պատմություն Աղուանից երկրի» (1997) և Մովսես Խորենացու «Հայոց պատմություն» (2003) երկասիրությունները:*

*Բ. Ա. Ուլուբաբյանը մահացել է 2001 թ. նոյեմբերի 19-ին Եղվարդ գյուղում:*

## ԳՐԻԳՈՐ ԵՂԻԿՅԱՆ
## (1880-1950)

*Մանկավարժ, թատերագիր, դերասան, գրաքննադատ, թարգմանիչ, հասարակական և կուսակցական գործիչ Գրիգոր Եղիկյանը ծնվել է 1880 թ. Արևմտյան Հայաստանի Ակն գյուղաքաղաքում: Սկզբնական կրթությունն ստացել է Կ. Պոլսում, բարձրագույնը՝ Հռոմում: Երիտասարդական տարիներից գործուն մասնակցություն է ունեցել հեղափոխական շարժումներին, անդամակցել Ս. Դ. Հնչակյան կուսակցությանը: Խմբագրել է Ս. Դ. Հնչակյան կուսակցության Ամերիկայի շրջանի օրգան «Երիտասարդ Հայաստան» օրաթերթը (Նյու Յորք, 1906), գրական, քաղաքական, տնտեսական և ընկերային «Կոհակ» շաբաթաթերթը (Կ. Պոլիս, 1909-1914): Հնչակյան կուսակցության 6-րդ ընդհանուր պատգամավորական ժողովի (12 հուլիսի, 1909) մասնակից: Կարևոր դերակատարություն է ունեցել Թեհրա-*

